

# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ԴԵԿԼԱՐԱՑԻԱՆ



## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ (ՀԻՄՆԱԿԱՆ ՕՐԵՆՔԸ) ԸՆԴՈՒՆԵԼՈՒ ԵՎ ՀԱՅՏԱՐԱՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության Գերագույն սովետը, գործելով Հայկական ՍՍՀ ժողովրդի անունից և արտահայտելով նրա սուվերեն կամքը, ընդունում է Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության սահմանադրությունը (հիմնական օրենքը) և հայտարարում է, որ այն գործողության մեջ է մտնում 1978 թվականի ապրիլի 14-ից:

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԱՀ՝ Բ. ՍԱՐԿԻՍՈՎ

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՔԱՐՏՈՒՂԱՐ՝ Մ. ԲԱԽՉԻՆՅԱՆ

14 ապրիլի 1978 թվականի, քաղ. Երևան

## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՀԻՄՆԸ






*Տեքստը՝ ՍԱՐՄԵՆԻ*

*Երաժշտությունը՝*

*Ա. Ի. ԽԱՉԱՏՐՅԱՆԻ*

Սովետական ազատ աշխարհի Հայաստան,
Բազում դարեր դաժան ճամփա դու անցար,
Քաջ որդիք քո մաքառեցին քեզ համար,
Որ դառնաս դու մայր հայրենիք հայության:

Փառք քեզ, միշտ փառք, Սովետական Հայաստան,
Աշխատասեր, ճարտարագործ-շինարար,
Ժողովրդաց սուրբ դաշինքով անսասան
Դու ծաղկում ես և կերտում լույս ապագան:

Լենինն անմահ մեզ հույսն անշեջ պարգևեց,
Մեր դեմ շողաց երջանկաբեր այգաբաց,
Հոկտեմբերը կործանումից մեզ փրկեց
Եվ տվեց մեզ նոր, պայծառ կյանք փառապանծ:

Փառք քեզ, միշտ փառք, Սովետական Հայաստան,
Աշխատասեր, ճարտարագործ-շինարար,
Ժողովրդաց սուրբ դաշինքով անսասան
Դու ծաղկում ես և կերտում լույս ապագան:

Մեծ Ռուսիան մեզ եղբայրության ձեռք մեկնեց,
Մենք կերտեցինք ամրակուռ նոր պետություն,
Լենինյան մեր կուսակցությունն իմաստուն
Հաղթարշավ մեզ դեպ կոմունիզմ է տանում:

Փառք քեզ, միշտ փառք, Սովետական Հայաստան,
Աշխատասեր, ճարտարագործ-շինարար,
Ժողովրդաց սուրբ դաշինքով անսասան
Դու ծաղկում ես և կերտում լույս ապագան:

# Կանաչ ծառուղի

ԼԵՈՆԻԴ ՀՈՒՐՈՒՆՑ



Վեցշենն ու Մեծշենը հարևաններ են, միմյանց այնքան մոտիկ, որ պարզ եղանակին մեծշենցիները կարող են հաշվել Վեցշենի բակերի ճտերը, իսկ վեցշենցիները իրենց հերթին... Մի խոսքով, մոտիկ հարևաններ են: Ու թեև նրանց գյուղերի անունները շատ բարձր են հնչում՝ Վեցշեն՝ այսինքն՝ Վեց գյուղ, և Մեծշեն՝ Մեծ գյուղ, բայց իրականում դրանք փոքր բնակավայրեր են, յուրաքանչյուրն ունի մի երկու տասնյակ տուն, որոնց կտուրները կարմիր կղմինդրից են՝ մեր լեռներում ամենուրեք տարածված բան: Հնում այդ գյուղերը դարը աղքատության մեջ էին ու միմյանց հետ միշտ անհամերաշխ:

Հիմա ինչ թվենք Մեծշենի ու Վեցշենի միջև տեղի ունեցած կռիվները: Հնում, երբ հողի-տերը հարուստներն էին, ինչ վեճ ու կռիվ ասես, որ տեղի չէր ունենում այդ գյուղերի միջև:

Մեծշենցիներն ու վեցշենցիները միացյալ ուժերով իրենց համար դպրոց կառուցեցին, առանձին-առանձին երբեք ուժ չէին ունենա: Միացյալ ուժերով կառուցեցին նաև ջրաղաց: Նրանք առանձին-առանձին չէին կարողանա նաև հիդրոկայանի շինարարությունը գլուխ բերել:

Նրանց երեխաներն էլ արդեն և՛ ընկերություն էին անում, և՛ միացյալ պիոներական խարույկներ վառում: Երկու գյուղի համար մի գյուղսովետ ընտրեցին: Սակայն երբ երկու հարևան կոլտնտեսությունների առջև հարց դրվեց տնտեսությունները միացնելու, վեցշենցիներն ու մեծշենցիները իսկույն չէ, որ համաձայնություն եկան: Վեճը դրա շուրջը երկարեց: Ամեն օր առավոտից երեկո





այս երկու գյուղերի մեծահասակները հավաքվում էին իրար գլխի և տաք-տաք վիճում: Այդ ընթացքում, այդ գյուղերի պիոներները իրենց հերթական հավաքույթի ժամանակ որոշեցին Վեցշենից մինչև Մեծշենն ընկած ճանապարհի երկու կողմից ծառեր տնկել:

Որոշումը կայացնելուց հետո նրանք գնացին լցվեցին գյուղսովետի ոչ մեծ, թթենիներով ստվերված բակը: Նրանց ընդառաջ եկավ գյուղսովետի նախագահ քեռի Սամվելը: Քեռի Սամվելը բարձրահասակ էր, այնքան բարձրահասակ, որ մարդկանց նայելիս ասես նայում էր ջրհորի մեջ: Նա տարեց՝ մարդ էր, կնճիռները ճակատն ակոսում էին ոչ թե սովորականի նման երկարությամբ, այլ լայնությամբ: Երբ ծիծաղում էր, կնճիռները հարթվում էին, կորչում, և դեմքը երիտասարդանում էր:

Քեռի Սամվելը լսեց պիոներներին, ու նրա դեմքը պայծառացավ, կնճիռներն անհետացան:

— Երեխանե՛ր, լավ բան եք մտածել,— ասաց քեռի Սամվելը,— ես գովում եմ ձեր որոշումը և կօգնեմ ձեզ:

Քեռի Սամվելը բլոկնոտը հանեց, ինչ-որ բան գրեց և թերթիկը պոկելով տվեց պիոներներին.

— Գնացեք պահե՛ստ, այս թուղթը ցո՛ւյց տվեք, և ձեզ բահեր կտան:

Սրաքիթ բահերը պիոներներն ստացան, բայց հետո էլ պետք էր տնկիներ ճարեին: Պիոներները դրա համար դիմեցին քեռի Աթանեսի՝ ագրոնոմի օգնությանը:

— Լավ բան եք մտածել,— ասաց ագրո-

նոմը,— միայն թե, երեխանե՛ր, ուշ չէ՞: Չէ՞ որ գարունն արդեն վերջանալու վրա է:

Քեռի Աթանեսը նայեց արևին, ապա թե.

— Լավ, ես մի ծանոթ այգեպան ունեմ: Գալուստ է անունը: Խելոք ծերունի է: Նա ձեզ կօգնի:

Քեռի Աթանեսը թղթի վրա գծեց, թե ինչպես գնան, որ այգեպանին գտնեն, և թուղթը տվեց պիոներներին: Պիոներները նայեցին թղթին և ծոծրակները քորեցին. Գալուստ պապիկը ապրում էր յոթ սարի ետևում:

— Ես ձիեր կտամ, գնացեք,— պիոներներին ասաց կոլտնտեսության ձիապանը:

Եվ ախոռից դուրս բերեց ամենալավ ձիերը:

Պիոներները թռան ձիերի մեջքին ու սուրացին ագրոնոմի նշած տեղը:

— Ես էդպիսի տնկիներ ունեմ,— ասաց ծեր այգեպանը:— Հենց Միչուրինից էլ ստացել եմ: Վերցրե՛ք ու տնկե՛ք:

Աշխատանքի եռուն պահին եկավ քեռի Սամվելը: Ապա՝ Աթանեսը: Գյուղսովետի նախագահը և ագրոնոմը դիտեցին պիոներների համերաշխ աշխատանքը և ժպտացին, նրանք մտովի տեսան ապագա ծառուղին: Քիչ հեռու կանգնել էր ձիապանը, որը վերադարձել էր ֆերմայից, նայում էր պիոներներին ու նույնպես ժպտում:

Եվ այն օրը, երբ վեցշենցիներն ու մեծշենցիները վերջապես դրական որոշման հանգեցին և երկու նախագահները իրենց ճակատի քրտինքը սրբելով, ժողովասրահից դուրս եկան թարմ օդ շնչելու, տեսան. ճանապարհի եզրերին, ասես նրանց ողջունելով, ձգվել էին տնկիները, որոնց ճյուղերին թառած թռչունները ծլվլում էին:

— Ա՜յ, շա՜տ ապրեն մեր երեխաները,— ասացին նրանք, ծառուղով հիանալով:

Վեցշենի և Մեծշենի միջև ընկած ճանապարհը աշխուժացավ: Տնկած ծառերը օրը օրին հասակ նետեցին, նրանց կատարները գանգրացան:

Լավ է ամռանը անցնել այդ ծառուղով: Թե՛ անձրևից չես թրջվի, թե՛ արևից չես այրվի ու թե՛ փոշուց պաշտպանված կլինես: Բայց ավելի լավ է ծառուղում լինել տաք ու լուսնյակ գիշերներին, երբ սկսում են սոխակները երգել: Մեծշենցի և վեցշենցի համերաշխ կոլտնտեսականները մինչև օրս էլ







հաճախ են պիոներներին շնորհակալություն ասում թե՛ ստվերաշատ զովության, թե՛ սոխակների ու թե՛, մանավանդ, այն բանի համար, որ կոլտնտեսության բերքը նկատելիորեն բարձրացել է, քանի որ ձմռանը ծառերի ստեղծած ցանկապատը ձյունը պահում է դաշտերում:

Հարևան կոլտնտեսության երեխաները իմացան Վեցշենի և Մեծշենի պիոներների արածի մասին, շտապեցին տեսնելու: Տեսան և լեզուները ծպպացրին.

— Լավ է,— ասացին նրանք:— Մենք ուզում ենք ձեր կանաչ ճանապարհը շարունակել մինչև մեր գյուղը: Բայց ժամանակը ձեռքից բաց ենք թողել: Ի՞նչ անենք:

— Պետք է Գալուստ պապիկի հետ խոսել,— կարճ պատասխանեցին վեցշենցի ու մեծշենցի երեխաները:

Սրանք հյուրերին ուղեկցեցին այգեպանի մոտ:

— Կմտածեմ,— ասաց այգեպանը:

Մի քանի օր հետո նա իր մոտ կանչեց վեցշենցի Սուրենին ու մեծշենցի Վարդգեսին.

— Ձեր հարևաններն էնպիսի տնկիներ են ուզում, որ կարելի լինի տնկել թե՛ ամռանը, թե՛ ձմռանը: Ես էլ էդպիսի տնկիներ եմ պատրաստել: Տարե՛ք տվեք:

Երկու մեծ տղաներ, մեկը՝ շիկահեր, իսկ մյուսը գիշերվա նման սև մազերով, տնկիները խնամքով փաթաթեցին խսրի մեջ և սուրացին հարևան գյուղը: Իսկ այնտեղ փոսերն արդեն պատրաստ սպասում էին արտասովոր ծառերին: Եվ ծառուղին շարունակեց երկարել: Հիմա արդեն Վեցշենից և Մեծշենից մինչև հարևան գյուղը կարելի է գնալ, առանց արևի կիզող ճառագայթների տակ ընկնելու:

Մեկ շաբաթ էլ չէր անցել, որ նախաձեռնող պիոներների մոտ մի ձիավոր սուրաց: Վառ կարմիր վզկապը հուրհրատում էր նրա պարանոցի վրա:

— Ես Վրաստանից եմ,— ասաց նա:— Կանաչ ծառուղին մեզ մոտ է հասել: Մենք ուզում ենք շարունակել: Որտեղի՞ց վերցնենք այն կախարդական ծառերը, որոնք արմատակալում և աճում են տարվա բոլոր եղանակներին:

Սուրենն ու Վարդգեսը վրաստանցի հյուրին ուղեկցեցին այգեպանի մոտ:

— Կմտածեմ,— ասաց այգեպանը:

Մի քանի օր հետո նա իր մոտ կանչեց Սուրենին ու Վարդգեսին.

— Ձեր վրացի ընկերները էնպիսի ծառեր են ուզում, որ ո՛չ անձրևից վախենան, ո՛չ էլ շոգից: Ես էդպիսի տնկիներ եմ պատրաստել: Տարե՛ք տվեք նրանց:

Սուրենն ու Վարդգեսը տնկիները խնամքով փաթաթեցին խսիրի մեջ և արագավազ ձիերով սուրացին Վրաստան:

Տղաները դեռ չէին հասցրել ճանապարհի փոշին թոթափել, երբ նրանց տան առաջ դոփեցին Ադրբեջանից եկած ձիերի սմբակները:

— Կանաչ ծառուղին հասել է մեզ,— ասաց ձիավորը, որ նույնպես պիոներական ալ վզկապով էր:— Մենք ուզում ենք շարունակել: Բայց այն ծառերը, որոնք Վրաստանի պիոներները մեզ նվիրեցին, չեն դիմանա մեր տափաստանների չոր կլիմային... Ինձ խնդրեցին իմանալու, թե դուք չե՞ք կարող մեզ օգնել:

Սուրենն ու Վարդգեսը ադրբեջանցի հյուրին ուղեկցեցին Գալուստ պապիկի մոտ:

— Կմտածեմ,— ասաց այգեպանը:

Մի քանի օր հետո այգեպանը Սուրենին ու Վարդգեսին կանչեց.

— Ձեր բարեկամները էնպիսի տնկիներ էին ուզում, որ երաշտից չվախենան: Ես նրանց համար էդպիսի տնկիներ եմ պատրաստել: Տարե՛ք:

Բարեկամները այս անգամ էլ տնկիները փաթաթեցին խսիրի մեջ և արագոտն ձիերով թռան Ադրբեջան:

Մեկ ամիս էլ չէր անցել, նախաձեռնող պիոներների կոլտնտեսության վրա ինքնաթիռ երևաց: Ծաղկուն դաշտերի ու այգիների վրա մի քանի պտույտ գործելուց հետո ինքնաթիռը վայրէջք կատարեց, ինքնաթիռից ելան երեք պիոներ.

— Մենք Կուբանից ենք եկել,— ասացին,— մեզ մոտ է հասել այն ծառուղին, որը ձեր կոլտնտեսությունից է սկսվել: Մենք ուզում ենք ծառուղին շարունակել, բայց այն ծառերը, որ մեր հարևաններից ենք վերցրել, մեր ցրտին չեն դիմանա: Մենք լսել ենք, որ դուք բոլորին օգնում եք: Չէի՞ք կարող մեզ էլ օգնել:

Կուբանցի հյուրերին տարան այգեպան Գալուստի մոտ, իսկ մի քանի օր հետո Սուրենն ու Վարդգեսը հերթական փոստային ինքնաթիռով թռան Կուբան: Նրանք իրենց հետ տարան ցրտադիմացկուն տնկիներ:

Այնուհետև Պոլտավայից նամակ եկավ: Պոլտավայի պիոներները գրում էին, թե կանաչ ծառուղին անցել է իրենց քաղաքի միջով, պապիկին շնորհակալություն էին հայտնել իր հրաշք տնկիների, իսկ Վեցշենի ու Մեծշենի պիոներներին՝ հրաշալի նախաձեռնության համար:

Այդպես, կանաչ ծառուղին անցնում էր գյուղից գյուղ, քաղաքից քաղաք, անցավ ամբողջ սովետական հողով, ասում են, նույնիսկ սահմանը կտրեց և արդեն անցնում է ուրիշ երկրների քաղաքներով ու գյուղերով: Եվ ամենուրեք, որտեղ էլ նա հայտնըվում է, հնչում է սոխակների երգը և աղբյուրի նման բխում է հրաշալի կյանքը:

*Նկ. ՎԱՂԱՐՇԱԿ ԱՐԱՄՅԱՆԻ*



**ՀՈՒՆԻՍԻ 1-Ը ԵՐԵԽԱՆԵՐԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ՕՐՆ Է**

# ԱՄԱՌ

ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ

Կակաչները կարմիր
Նժույգների նման
Արա լեռան լանջով
Սլանում են արագ.
Ամռան կանաչ քամին,
Կապույտ քամին ամռան
Թոցնում է կարմիր
Թերթիկները նրանց:

Ղողանջում են հովից
Մաղիկները զանգակ,
Մաղում արծաթ փոշի,
Ամռան բացատներում
Աղջիկների նման
Գույն-գույն շորեր հագած՝
Թիթեռները են ճախրում
Կորած արծաթներում:

Կարկաչում են անուշ
Ջրերը շինջ ու տաք,
Դեպի արև, դեպի
Արտ ու այգի հոսում,
Փռում բերք ու բարիք,
Փռում երգ ու խայտանք,
Երգում ամռան մասին,
Ամռան մասին խոսում:

Ջրերը տաք ու շինջ
Զնարները են ամռան,
Մնձղաները թովիչ
Ու փողերը շողուն,
Որ հյուսում են ոսկե
Արևի հետ ամռան
Հազար աչք ու բալլադ՝
Մեր հինավուրց հողում:

Հայրիկը աշխատանքից հենց գալիս է, իջնում է այգի: Ինչ հարցնում եմ, ասում է՝ մայրիկից հարցրու, ես հոգնած եմ, իսկ մայրիկն էլ միշտ զբաղված ու միշտ կայրացած է:

— Տա՛տ, դու էլ ե՞ս հոգնած:

— Մի քիչ... ի՞նչ է որ:

— Արի՛ գնանք ձորի վրայի դամբուլները քաղենք...

— Բա որ գլորվեմ ձորն ընկնե՞մ,— ծիծաղում է տատիկը:— Տանը ոչ ոք չկա, ո՞վ պիտի ինձ ձորից հանի:

— Ձորն ընկնես, ես շուտ կվազեմ ու Անուշիկի պապիկին կկանչեմ, տես, իրենց լոբիներն է ջրում: Տա՛տ, մենք ինչո՞ւ լոբի չենք ցանո՞ւմ:

— Պապդ ցանում էր,— հառաչում է տատիկը և մաքրած կեռասները լցնում է դույլի մեջ:

## Ե՞ՐԲ Է ԳԱԼՈՒ ՄԵԾ ՊԱՊԻԿԸ

ՍՈՆԱ ՏԻԳՐԱՆՅԱՆ

— Նկա՞ր-պապիկը...

Տատիկը վեր է կենում, վերցնում է կեռասով դույլը և կամաց-կամաց, դարավանդով բարձրանում է վեր: Հետո հանկարծ շրջվում է ու բղավում.

— Արմինե՛, բաղոցից ցած չիջնես, ես հիմա կգամ:

Տատիկը դարավանդին բաղոց է ասում:

Այս դարավանդները, կամ բաղոցները, սարքել է իմ պապիկի պապը:

Նա մեծ-մեծ, հետո փոքր-փոքր քարերը հավաքել, շարել է, հետո պարկով հող է բերել, լցրել է բաղոցների վրա ու ծառեր է տնկել: Մեր այգու բոլոր խաղողի վազերը իմ պապիկի պապի տնկածն են:

Տատիկը բաղոցներով ցած է իջնում: Մեկ, երկու...

— Աչքերիդ մեռնեմ,— տատիկն է,— երեք, մնաց մի բաղոց...

Տատիկը վերադառնում է, ափսեով մածուն է բերում, պանիր, լավաշ: Ուրեմն, քնելու ժամն է:

— Խելո՛քս, կե՛ր, որ քնես:

Իմ ճոճը վեցերորդ բաղոցին է կապած, ծիրանի ծառի տակ, իսկ մի քիչ հեռու դեղին դամբուլն է, կողքին՝ Անուշիկենց բաղոցին:

Անուշիկը պարծենում է, ասում է, իրենց բարդին մեծ է մեր դամբուլի ծառից:

— Ի՞նչ անենք,— ասում եմ ես,— ձեր բարդու վրա ոչինչ չկա, միայն տերևներ են: Իսկ մեր դամբուլները տես ի՞նչ գեղեցիկ են, դեղին, թշիկները՝ կարմիր:

— Հետո ի՞նչ,— ասում է Անուշիկը,— դուք ձեր դամբուլները միևնույնն է, չեք քաղում: Բոլորը թափվում է ձորը:

— Կմեծանամ ու կքաղեմ...

— Ձեր դամբուլի ծառին իմ պապիկի ձեռքը չի հասնում, ուր մնաց՝ քոնը,— ծաղրում է Անուշիկը:

— Իսկ իմ մեծ պապիկի ձեռքը կհասնի,— ասում եմ,— ինքն է, չէ՞, տնկել:

— Պապիկդ ո՞ւր է որ, այստեղ չի:

— Գալու է:

— Ե՞րբ...

Լռում եմ: Չգիտեմ, թե երբ է նա գալու, որ քաղի այս բոլոր-բոլոր հասած, դեղին-դեղին դամբուլները:

# ՀԱՅՐԻԿԻ ՆԿԱՐԻ ՀԵՏ




Հովիկը Լիլիթից երկու տարով մեծ է, դրա համար ինքն է բռնել ալբոմը: Նա իր հսկայական, սև աչքերը հառել է մի նկարի: Նկարից նայում է իր նման հսկայական, սև աչքերով մի ուրիշ տղա, որի գոտուց կախված թուրը տղայից մեծ է:

— Տո՛ւր ես էլ նայեմ,— եղբոր թևից քաշում է Լիլիթը:

Հովիկը քրոջն է պարզում նկարը:

Լիլիթը վերցնում է, ինքն էլ է երկար, լուրջ-լուրջ նայում.

— Հո՛վ, կտա՞ս ես էլ քո էս թրով նկարվեմ:

— Ես էդպիսի թուր չունեմ:

— Ունես, ունես, հայրիկն էր Մոսկվայից բերել:

— Իմը սրանից չի, բերե՞մ տեսնես:

Հենց այդ պահին նկատում են մայրիկին, որ եկել, կանգնել է դռների մեջ:

— Մա՛մ, ես չեմ վերցրել,— շտապում է արդարանալ Լիլիթը:

Հովիկը լուռ է: Նա մեկ նայում է հատակին թափթփված նկարներին, մեկ մայրիկին...

— Ես թուղթ էի վերցնում, ուզում էի նկարել, հետո տեսա... Դու մեզ ցույց չէիր տվել այս նկարները,— հոնքերը կիտում է Հովիկը:

— Իսկ ինչո՞ւ եք սրանք թափել ալբոմից:

— Ներողություն, մա՛, էլ չեմ անի,— կմկմում է Հովիկը:

— Իսկ դու չե՞ս ուզում ներողություն խնդրել, Լիլի՛թ,— հարցնում է մայրիկը:

— Իսկ որ...— իր կաթնահունց մռութիկն է ծռմռում Լիլիթը.— իսկ որ ներողություն խնդրեմ, ի՞նչ կլինի...

— Կիմանամ, որ դու էլ հասկացար սխալդ:

— Հովիկը տվեց, ես էլ նայեցի... տե՛ս, Հովիկն ի՜նչ թուր ունի... էլ չեմ անի... ճիշտ եմ ասում:

— Սա պապան է,— հանգիստ ասում է մայրիկը:

Հովիկի աչիկները զարմանքից ու հետաքրքրությունից փայլում են երկար-երկար թարթիչների տակից:

— Վա՜յ,— բրբջում է Լիլիթը,— բա փոքրիկ պապա կլինի՞:

— Նա Հովիկի պես փոքրիկ տղա էր, մեծացավ դարձավ պապա:

— Երբ պապան փոքր էր, ես մեծ էի, չէ՞,— ասում է Հովիկը:

Հիմա էլ մայրիկն է բարձր-բարձր ծիծաղում:

— Հա՛, մա՛մ... բա ե՞ս,— լրջանում է Լիլիթը,— բա ես ի՞նչ էի անում, երբ պապան փոքր էր, ես էլ էի՞ մեծ:

— Իսկ որ մենք մեծանանք, դու կփոքրանաս, հա՛, մա՛,— հարցնում է Հովիկը:

— Իմ չափ կդառնա՞ս... վա՜յ... ես քեզ կսիրեմ, իմ խաղալիքները քեզ կտամ, մա՛մ ջան:— Քնքշանում է Լիլիթը:

— Ո՛չ, ոչ թե կփոքրանամ, այլ ավելի կմեծանամ, տատիկ կդառնամ,— ասում է մայրիկը:

— Ես չեմ ուզում, որ դու տատիկ դառնաս, տատիկն ասում է՝ Հովիկ ջան, մեծացել, պառավել, քոռացել եմ, լավ չեմ տեսնում...

— Չե՛մ ուզում, որ մեծանաս պառավես, քոռանաս,— լացակումած ձայնակցում է Լիլիթն ու գրկում մայրիկին:

— Ես չեմ պառավի, տատիկ կդառնամ, բայց չեմ պառավի,— ասում է մայրիկը,— ճիշտ եմ ասում, ում շատ են սիրում, նա չի պառավում, իսկ ես գիտեմ, որ դուք ինձ շա՜տ-շատ եք սիրում:



ԱՐՄԵՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ, Երևան, 7 տ.

ՎԱՀԱԳՆ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ, Երևան, 7 տ.



# Հ Ա Ր Գ Ա Ն Ք՝ Ե՛Վ ԸՆԿԱԾՆԵՐԻՆ, Ե՛Վ ՈՂՋԵՐԻՆ



Մեծ հայրենականում մեր՝ Մարդակերտի շրջանի Քոլատակ գյուղից զոհված 74 մարտիկների հիշատակը հավերժացնող կոթողի պահպանումը հանձնված է գպրոցականներին:

Այդ հուշարձանը կառուցվել է 15 տարի առաջ և Լեռնային Ղարաբաղում առաջինն էր: Հուշարձանի մասին գրվեց համամիութենական թերթերում, օրացույցում: Պատերազմի հաշմանդամ, Կիսլովոդսկ քաղաքի բնակիչ Միխայիլ Կուշիրը թերթում կարդալով այդ մասին, շատ էր ուրախացել և գյուղսովետի հասցեով մի ծանրոց էր ուղարկել, որի մեջ 12 տեսակի ծաղկասերմեր կային: Դպրոցականները այդ սերմերը ցանեցին հուշարձանի շուրջը և դրանք գեղեցիկ ծաղկեզարդ դարձան:

Պատերազմը սրկանք ու տառապանք բերեց մարդկանց: Ինձ հետ շատերը կամավոր մեկնեցին և նրանց հետ էին նաև 80-ամյա Աղալո պապի 7 որդիները՝ Բաբայան եղբայրները: Այսպես բոլոր տղամարդիկ մեկնեցին և մանուկների խնամքն ու ապրուստի միջոցներ ստեղծելը կանանց ու ծերունիների վրա մնաց: Որդիներին ճանապարհելուց հետո, Աղալով պապը նորից ձեռքն առավ հյուսնի գործիքները և գնաց կալերում լուծ, սայլ, լծասարք և անհրաժեշտ այլ իրեր սպատրաստելու, վերանորոգելու:

Այսօր մեր գյուղի միջնակարգ դպրոցի 200 աշակերտներ չեն տեսել իրենց պապերին: Գիտեն միայն, որ նրանք զոհվել են Հայրենական մեծ պատերազմում և նրանց անունները փորագրված են հուշարձանի մարմարյա սալի վրա: Շատերը չգիտեն, որ իրենց տատիկները հավասարապես կատարել են և՛ տղամարդկանց, և՛ կանանց գործեր, բերքը չի մնացել դաշտում, չի փչացել: Երեխաները չեն պատկերացնում, թե ինչպիսի ցավ ու վիշտ են կրել համագյուղացիները՝ Նախշունը, Դանան, Գյուլին և շատ ու շատ ուրիշ տատիկներ, որոնք պատերազմում կորցրել են իրենց որդիներին:

Պատերազմի մասնակիցներին, այդ թվում նրանց, որոնք չվերադարձան, ես լավ եմ հիշում (ինքս էլ եմ մասնակցել ու երկրորդ կարգի հաշմանդամ եմ): Նրանք բոլորն էլ խելացի, քաջ ու հայրենասեր տղաներ էին, արժանի ամենայն փառքի ու պատվի: Վարձատրված կզգայինք մենք մեզ՝ պատերազմի մասնակիցներս ու նախկին ճակատայիններս, եթե այսօրվա դպրոցականները՝ մեր թոռնիկները, ավելի շատ տեղեկություններ իմանային իրենց պապերի հերոսական գործերի մասին: Ձեր պապերը արյուն են թափել, կյանք են զոհել հանուն հայրենիքի ազատության, հանուն ձեր այսօրվա անհոգ ու նրջանիկ կյանքի:

Աշակերտները, ճիշտ է, մեծ սիրով խնամում են զոհվածների հուշարձանը, ծաղիկները թպրոմ պահում: Բայց շատ լավ կլիներ, որ նման հոգատարություն և ուշադրություն ցուցաբերեին նրանք նաև պատերազմից ողջ վերադարձածներիս նկատմամբ:

ԳՐԻՇԱ ԱՂԱՍՅԱՆ

*Լեռնային Ղարաբաղ, Մարդակերտի շրջ., գ. Քոլատակ*

**ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԻՑ.—** Գրիշա պապը իր այս հոդվածը, ինչպես տեսնում եք, ավարտել է իր շրջապատի դպրոցականներին ուղղված ուշագրավ խորհրդով: Հրավիրում ենք մեր ընթերցողներին գրույցի այս հարցի շուրջը:

Նրա ասածը հաստատող կամ հակառակը ցույց տվող ինչպիսի՝ օրինակներ գիտեք:




ՀՐԱՆՏ ՄԱԹԵՎՈՍՅԱՆ

Նրանց հոգնած քարավանը եկավ, խոտի թույլ շրշյունով եկավ, և մեկ էլ լսվում էր, թե ինչպես է բախվում պապի փայտե եղանը, խոտը լուռ, որպեսզի կովերը զոմում չլսեն խոտի ձայնն ու կերի չսպասեն, տեղավորեց զոմի ձեղունում, և խավարի մեջ չերևաց՝ շա՞տ է այդ խոտը, թե՞ քիչ, մե՞ծ էր այդ տառապանքը, թե՞ փոքր, և տատի-պապի աստվածը խավարի մեջ չտեսավ, որ պապը աղջիկ-թոռներին բարձել էր, պարանը նրանց ուսերը կտրտել է, ինչքան էլ խոտ են դրել պարանի տակ՝ չալակը դարձյալ քաշել ու թոկերը մտցրել է աղջկա նրանց մաշկի մեջ, կսմթել, քերծել, հարել, ծամծմել ու ջարդել է նրանց ուսերը, իսկ պապենական խոսքն ասում է. աղջիկը հորանց տանը եթե արև տեսավ՝ տեսավ, թե չէ՝ ամուսնու տանը նա կյանք չունի:

Խոտի չալակը բռնի չալակից լավ է. փափուկ է, միայն պարաններն են ցավեցնում և եթե խոտի մեջ կռատուկ կա՝ կռատուկի չոր, ուղղակի մետաղյա միջուկը, բայց պապի հնձած խոտի մեջ փուշ ու կռատուկ չէին լինի: Հետո՝ մեջքդ տաք է պահում: Բռնի չալակը քո մեջքին՝ ինքը գուցե մի քիչ տաքանում է, բայց մեջքդ չի տաքացնում: Սառը և քո նիհար կողերի պես չոր՝ բռնի չալակը մեջքդ անընդհատ հարում է, երեխայի ճկուն ինչ-որ հնարքով դու քո ողը փախցնում ես ուսի տակից, բայց ուսը գտնում է քո ողը: Դու մեծ ես, ոչինչ, դու տասնմեկ տարեկան ես, Ժորիկի չալակը եթե կարողացել ես այնպես կապել, որ ուսերը դուրս չեն ցցվել ու երեխայի մեջքը հիմա չեն կրծում, դու ինքդ՝ ոչինչ, դու մեծ ես:

Խավարը դանդաղ ետ տանելով՝ Նորիկն ու Ժորիկը հիմա բռխը տուն էին հասցնում: Վառարանն արդեն սառել էր, ոչ ոք նրանց չէր գովելու, նրանց մատները ոչ ոք չէր պաշելու. մայրիկը հիվանդանոցում էր, Հովիկը՝ մարագների ճանապարհին, Հայկը՝ Քոռի կողմերը:

Դույլը ձեռքին՝ Հրայրը ելավ տնից, դուռը բացվելու հետ խորոված կարտոլի հոտը դուրս խփվեց, Հրայրը եկավ կանգնեց տղայի մոտ ու խնդրեց նրա գլխարկը, և երբ հեռանում էր աղբյուրի ճանապարհով՝ տղան տեսավ, որ նա իրեն կարտոլ է տվել: Տղան կարտոլը նրա ետևից շպրտեց, կարտոլը կպավ նրա թիկունքին թե չկպավ, բայց նա հանկարծ բղավեց ու դույլը շխշխկացնելով վազեց: Այդպես անընդհատ բղավելով նա հասնելու է աղբյուր և ձենը գլուխը գցած մնալու է մինչև դույլը լցվի, վերադարձին նույնպես երբեմն գոռալու է: Նա ասում է, թե վախից չի գոռում, ցուրտը փախցնելու համար է գոռգոռում: Ճանապարհին նա հատուկ իր տեղերն ունի, դույլը գետնին է դնում, բղավում, դույլը հիմա էլ մյուս ձեռքով է բռնում, և ապատված ձեռքը վեր է թռչում, դույլը նա բերում է ծալվելով-ծալվելով, բայց միշտ ինքն է ջրհ-գընում, մանավանդ երբ այդ ջուրը հայրն է խմելու:

Լամպը վառվեց, և աղջնակը կպած էր լուսամուտին: Լամպը վառվելու հետ նա տղային կորցրեց և ապակու վրայով սկսեց փնտրել: Ապակին քրտնած էր, ձեռիկը քամելով նա սրբում ու քթիկը հպում էր, բայց նրա շնչից ապակին նորից էր պղտորվում:

Եղբայրը վերադարձավ, դույլը պատշգամբում դրեց և գլխարկը ետ բերեց: Տղան գլխարկը չուզեց, բայց եղբայրը մտածեց, որ կարելի է միանգամից տղայի գլխին դնել: Տղան գլխարկը գետնին խփեց: Եղբայրը գետնից վերցրեց գլխարկը և նայեց ջան պես գլուխը թեքած:

Լամպի լույսը պայծառացավ, և նրանք երկուսն էլ հասկացան, որ հայրիկը գալիս է: Գլխարկը հիմա տղայի ձեռքին էր, եղբայրը տուն էր մտնում... բայց մորից, տղայից, եղբորից ու աղջնակից զատ հոր ներկայությունն կգացել էր Շուշան մորքուրը: «Իհի,— անիծեց նա,— ով իմ թռչունի ոտը կոտրել է՝ թող, թող, թող նրա...» Նա լռեց ու ականջ դրեց: Նա դեռ միայն հետախուզում էր. իրենց դռնից Մեղրատանձու լանջը՝ նա տղամարդու կանգնածն զգում էր, բայց այնքան էլ վստահ չէր, թե այնտեղ արդեն տղամարդ կա: «Ախչի՜,— գանգատվեց նա,— տվել որձակիս ոտը կոտրել ու ծիծաղում են, ասում են՝ տապակեք կերեք, տուր մեկ ուտենք, ասում են»: Դրսերում ոչ մի «ախչի» էլ չկար, նա այդպես տղային հորն էր պատմում, լանջից լանջ՝ նա տղայի հորից որևէ խոսք էր ուզում: «Խլացել են,— ասաց նա,— չեն լսում, հետները խոսողը մարդ չի՝ անտեր կնիկ է, արհամարհում են»:

Սկիզբը՝ 1978 թ. № 1-ում

Հայրը չէր խոսում. այդ այրիներով լի գյուղում՝ չէր կարելի լինել, առավել՝ լինել և ասել «ես կամ»: Դեռ շատ տարիներ են անցնելու՝ մինչև հայրը հասկանա, որ որբ այդ երեխաների հայրերին, այրի այդ կանանց ամուսիններին՝ իր ընկերներին ինքը չի վոհել և չամաչի իր ողջության համար:

— Չկան,— խելագարվեց Շուշան մորքուրը,— չիք են կտրել չքացել, խլացել են՝ չեն լսում:

Մայրն ըստ երևույթին մյուս կողմի լուսամուտը բացել և ուզում էր պատասխանել: Չպատասխանեց. լուռ՝ լուսամուտի փեղկը վրա դրեց:

— Ի՞ի, լռվե՞ք դուք,— անիծեց Շուշան մորքուրը,— էդպես բանտի պես վախենաք դուրս նայեք, վախենաք մարդու ձեն լսեք, ձեր բախտավորությունը վախենաք ցույց տաք:

— Ի՞նչ է, ախչի՛,— լուսամուտը բացեց ու ասաց մայրը,— ձենդ ի՞նչ ես գլուխդ գցել, ի՞նչ ես խելագարվում:

— Քաշվիր տո՛ւնդ,— ասաց Շուշան մորքուրը, — դուռդ վրադ փակիր ու վայելիր, բախտավոր. կրակըդ՝ վառ, երեխեքդ՝ լրիվ, մարդդ՝ գլխին — անբախտների մասին դու խի՞ պիտի մտածես:

— Համեցիր,— ասաց մայրը:

Իր բախտին ու բեռանը հնազանդ որպես բեռնաձի, որ միայն իր տիրոջ տան արահետը գիտի, որպես խուլ խոփ, որ հողի մեջ խեղդվում է, որպես եզան պարանոց՝ լծի ու սամիների նեղվածքում, այդ կանանց կովի միջով հայրը եկավ, անցըրեց տարավ իր շալակը, մտցրեց գոմի սրահ ու նստեց: Այդպես լուռ նստած էր, չէր թափահարվում ու պարանների նեղվածքից դուրս չէր գալիս, լուռ ու խուլ այդպես նստած էր:

Մայրը տնից ելավ ու պատշգամբում սպասեց ջուրն ու սրբիչը ձեռքին, բայց գոմի սրահից նա դուրս չէր գալիս, նա, թվում է, մարդ չէր, այլ ձի, որ բեռը տեղ է հասցրել ու հնազանդ սպասում է իջեցնեն:

Պատշգամբում, մայրը տեղում անհամբեր շարժվեց, բայց շարունակեց սպասել: Քրտնած ապակու ետևը, դեղին լույսի մեջ աղջնակի դեմքը վանքի հին որմնապատկերի չափ անշարժ էր: Դեղին լուսամուտի մեջ եղբոր աղոտ դեմքը միացավ աղջնակի գլխին:

Մայրն արդեն անհանգստացավ: Թվում էր՝ խաբկանք է, թվում էր՝ հայրը չի եկել: Անուշան, չշարժվելու պես, ինչպես ծվարած հավքն է շտկում թևը, մայրը տեղում շարժվեց ու ասաց, կարծես թե չասաց, կարծես մտածեց. հայրիկ: Ապակու վրայով գոլորշու պաղած կաթիլներ էին գլորվում, թվում էր՝ աղջնակը արտասվում է:

Եվ այդ ժամանակ խոտը գոմի սրահում շրշաց. հայրը մի ուսը պարանի միջից հանեց: Սպասեց, մռռացավ, հիշեց, նորից հիշեց ու նորից մռռացավ հանել մյուս թևը: Դարձյալ այդպես նստած էր:

Տղան լսեց «հայրիկ» և չհասկացավ՝ դա իր սրտի կա՞նչն էր, թե՞ մոր ձայնը: Տղան լաց եղավ: Տղան նույնիսկ չհեկեկաց ու նույնիսկ չֆսֆսաց. տղան լուռ լաց եղավ: Տղան լաց էր լինում ու հիշում իրենց վերելքը. հայրը գնում էր և ինքը գնում էր. հայրը ոտքով ձյուն շպրտեց դեպի բաց գետինը. հայրն ու ինքը միասին ծիծաղեցին ծծկեր միթևանու վրա. հայրը բոխին այնպես հատեց, որ բոխին առանց ցնցվելու կանգնած մնաց, հավասար եղբոր պես ինքն ու հայրը փախստականի հետքին միասին էին հակվել, հետո քամին ծեծում, ուղղակի պատռում էր հոր բաճկոնի փեշերը, իսկ իր կարմիր կերպարանքը արևի մեջ կանգնած էր սպիտակ լանջին: Տղան արժանի չէր կրելու այդ պատկերները, դրանք տղայի պատկերները չէին, արդարն այն կլիներ, որ տղան քայլ առ քայլ հոլովեր իր փախուստը, բայց նրա էությունը փախուստից ոչինչ չէր վերցրել, տղան չէր կարողանում անդրադառնալ փախուստին:

Տաքություն, քրտինք ու ծաղիկ բուրելով՝ հայրն անցավ դեպի դուռը, չոր խոտի, քրտինքի ու ջերմության քաղցր մշուշը քսվեց տղայի դեմքին: Դրանք տղայի բույրերը չէին, տղան այդ բույրերին արժանի չէր, նա շունչը պահեց, որպեսզի իր մեջ չառնի այդ ծանր, քաղցր մշուշը:

Մայրը պատշգամբի դռնակը նրա առջև բացեց, բայց նրա պանգվածը կանգնել էր ու պատշգամբ չէր մտնում: Նա դանդաղ, կոռով, ասես եզան պարանոց էր ոլորում, ասես կաղնի էր ճկում, թևերը ետ ոլորեց ու փորձեց հանել բաճկոնը: Նա մռռացավ կամ չկարողացավ,— բաճկոնը նրա վրայից մայրը հանեց, և նույնիսկ մայրը դժվար հանեց, բաճկոնը նրա թիկունքին ծեփվել էր, մայրն ուղղակի պլոկեց բաճկոնը:

Բազրիքի վրայից նա վերցրեց լվացվելու ջուրը, մոր ձեռքերը օդում մնացին, և սկսեց խմել: Նրա բույրը կանգնած էր տան դռնից մինչև գոմի սրահը: և գոմի սրահից մինչև... և այդպես մի շաբաթ մնալու էր այդ բույրը, իսկ նա, մոր արցելքի դեմ կույր ու խուլ, ծծում էր լվացվելու ջուրը, և տղան չկարողացավ հեկեկոցը զսպել:

Նա հիմա այնտեղ լվացվում էր, մայրը նրա ձեռներին ջուր էր ածում, տղան մտովի տեսնում էր ուստու նրա մատները. այդ մատները ջուրը չէին պահում, ջուրը մատների արանքից թափվում էր, և խոնավ ձեռները հայրն առանց ջրի էր քսում պարանոցին ու դեմքին:

Հիմա սրբվում էր, դանդաղ քսելով՝ սրբիչն իջեցնում էր դեմքն ի վար, իսկ մայրը ծնկած ավլում էր նրա ոտքերը, կեշի ավելով ու մատներով

պոկոտում էր ձյուները նրա գուլպաների ճտքերից, ուզում էր արձակել բանակային նրա կոշիկների քուղերը, նա այնինչ հավիժ թե զգում էր, որ իր ճտքերը մաքրում ու քուղերն արձակում են. նա ոտքերը լայն դրել ու ինքը իրեն մոռացել էր:

Ներս մտնելուց առաջ, դռան տակ, նրանք հիմա քչփչում էին, այդ կինը քչփչում ու կարծում էր հոգնության խուլ թաղիքների մեջ կորած այդ մարդը հիմա կարող է այդքան ցածր ձայներ լսել: Նրա ուշադրությունը այդ կինը թերևս հրելով տղային դարձրեց, բայց հայրը դարձյալ չհասկացավ, թե նա իրենից ինչ է ուզում, և այդ կինը նորից քչփչաց ու կարծես ծիծաղեց:

Այդ քչփչոցը միայն տղայի մասին էր, այդ մշակի բերանով տղային տուն կանչելու մասին էր մոր քչփչոցը, տղայի հպարտությունը այդ կնոջ համար ոչինչ էր, չկար, ծանր այդ մշակի հաղթած գոյությունը այդ կինն ցուղարկում էր տրորելու տղայի փոքրիկ հպարտությունը, և տղան ատեց այդ կնոջ դավադիր քչփչոցն ու ծիծաղը: «Ականջը մտած քչփչա, քչփչա,— ուռավ տղան:— Թե գիտես, թե մենակ դու ես»:

Մի ոտը շեմին՝ հայրը կանգնած էր դռան մեջ, հոր թիկունքից գոլորշի էր ելնում: Տղայի բախտից՝ հայրն այդ կնոջը չհասկացավ: Եթե հասկանար ու գար, տղային մի թեթև դեպի տուն հրեր, կամ եթե նույնիսկ չհասներ տղային, այլ ոտքը շեմքից միայն ետ բերեր՝ տղան տուն կգնար ու կատեր հորը, մտքում՝ տղան արդեն ենթարկվել ու ատում էր այդ մարդուն, նրա ծանր ներկայությունը, որը եկան ոտի պես հիմա-հիմա գետնի տակ էր մղելու տղայի հպարտության նվաղ ծիլը... Բայց տղայի բախտը բերեց. հոր թիկունքից գոլորշի էր ելնում, հետո հայրը տուն մտավ:

— Հերդ կանչում է,— ասաց մայրը:

Տղան պատասխանեց.

— Կանչում է՝ դու էլ գնա:

— Քեզ է կանչում,— ասաց մայրը:

— Չի կանչում,— ասաց տղան,— գնա կանչե՛լ տուր:

Այդ կինը լռում էր. նա գուցե կղզում էր դավադրության համար, գուցե և չէր հասկանում, որ քիչ առաջ ինքը վատ բանի էր, հետո բողոքեց.

— Բա ես ի՞նչ անեմ, որ դու գրագետ ես, ես՝ անգրագետ:

— Կովը քշիր Չորագե՛ղ ու էնտեղից ե՛տ բեր,— ասաց տղան:

Աղջնակի դեմքը նորից հայտնվեց ապակու ետևում:

— Հիմի՝ էդպես ինչքա՞ն ես կանգնելու,— ասաց մայրը:

Տղան որոշեց· չլսել, խլանալ ու չլսել:

— Մինչև ե՞րբ ես կանգնելու՝ սառ՛ խմանամ,— ասաց մայրը:

Տղան չպատասխանեց:

— Որ թոքախտ ընկնես՝ ես ի՞նչ եմ անելու,— ասաց մայրը:

Տղան ետ-ետ արեց. ետուետ՝ տղան հեռացավ, բայց այդ կնոջ ձայնը դեռ գալիս էր, այդ կինը ներս չէր գնում:

— Բոլորը, բոլորը, բոլորը, դեյրայից սկսած՝ բոլորը քո պատճառով,— ասաց տղան:

— Սատկի՛ր,— ասաց այդ կինը, բայց նա, միևնույն է, ներս չէր գնում: Պատշգամբի դռնակը բացելով՝ նա առաջ եկավ, մոլորված կանգ առավ, ոտքը դարձյալ առաջ գցեց, և այդ ժամանակ տղան ասաց.

— Կթողնեմ էստեղից կգնամ:

— Խոտ բերելը քո գործը չէր,— ասաց մայրը:

— Իմ գործն էր:

— Մի մատ երեխա ես,— ասաց այդ կինը,— քու գործը չէր:

— Հա՛,— պայթեց տղան,— էն մարդը ձեր մըշակն է, գնացեք կերե՛ք:

— Թող խաբեբա լինի՝ չչարչարվի, ես մեղավոր չեմ, նե՛րս արի,— կայրացավ այդ կինը, սակայն տղային փրկեցին:

Շուշան մորքուրը տղային փրկեց: Տան անկյունից նա հայտնվեց միանգամից: Երևում էր, որ կանգնած ականջ է պահել մոր ու որդու վեճին, հասկացել է, որ տղամարդավոր այս ընտանիքում էլ ցավեր կան, և ուրախ է այդ խեղճության համար:

— Անո՛ւշ ջան,— խնդրելու պես ասաց նա,— անո՛ւշ, ձեր որսը ձեզ եմ տալիս: Փետել, մաքրել, բերել եմ: Խոսից կտաք՝ կտաք, չեք տա՝ դուք ու ձեր խիղճը, չնայած դուք խիղճ չունեք:

Բայց նրա հոգսը սագը· չէր. եթե սագը լիներ՝ կտար ու դռնից էլ ետ կգնար. նա ուզում էր տղայի հորը տեսնել. նրա ամուսինը տղայի հոր ընկերն էր եղել, հին որևէ երեկոյի մեջ նրանք կողք-կողքի կանգնած էին եղել չափարի տակ, հոգնած կրուցել էին ամեն մեկն իր տուն գնալուց առաջ, ամուսնուն սպասելով՝ իրենց դռնից նա նրանց ձայնը լսել ու խոսքը չէր լսել, նա հիմա կարոտել էր հին ամռան հոգնած, փոշոտ, տաք այն երեկոյին, նա ուզում էր տուն մտնել ու հասկանալ, թե այդ ինչ եղավ, որ ամուսինն ահա կար ու ահա չկա: Երեկոյի մասին նա չէր խոսելու, չէր խնդրելու նաև իրենց ջարդված դռան մասին, տղայի հորը նույնիսկ մի կարգին չէր նայելու և նույնիսկ դեպի հոր թախտը չէր նայելու. նա կարկամելու, փոքրիկ աղջկա պես գլուխը կախելու ու դռան տակից առաջ չէր գնալու, և վառարանի մոտից ու պատուհանի տակից նրան նայելու էին աղջնակն ու Հրայրը: Նա այդպես մի քիչ

կանգնելու էր, տղայի հորը չէր տեսնելու, հոր բառերից ոչինչ չէր հասկանալու, թերևս նրա շունչն էր մի քիչ զգալու և մի քիչ էլ նրա բույրերից էր առնելու իր կարկամած ռունգերը, և հանկարծ դուրս էր գալու լացակումած, այդ տանը կարծես մեկը նրան նեղացրեց: Իսկ հիմա կանգնած էր բակիքի դռան մոտ և այդ տուն մտնելու թույլտվություն էր ողորմում տղայի բախտավոր մորից:

Մայրը նրան կոռով ներս տարավ, նա իրը չէր ուզում: Աղջնակի դեմքը հեռացավ պատուհանի դեղին ապակուց: Դանեյանց տներում երեխա դուրս բերին փիշիկի և ոգևորեցին, թե նա քաջ է, նրա միայն ձայնից գայլերն ու արջերը իրենց որջերում տակ են անում, նա թող գռռա... և նրա սուր ծղրտոցը դիպավ ճրագթաթ անտառին ու ետ եկավ, հետո երկնքի լուռ աստղերն ու տղան էին:

Գոմից տաք խուլոց էր գալիս, աղջնակի դեմքը մոտեցավ ապակուն, ճրագթաթից դենը մի աստղ ծորաց, հետո մենակ տղան էր:

Շուշան մորքուրը տնից դուրս նետվեց կրակված պես, մոռացել էր, որ տղան դրսում է՝ արհամարհեց տղայի հորը. «Հողեմ բախտավոր գլուխդ, ասում է՝ մարդ ունեմ, ավերակ էլ չի ասում՝ տղամարդ», շտապ-շտապ գնաց, ձյունը նրա քայլերի տակ խրթխրթում էր, մտավ ձորը և, մինչև կհասնեին իրենց տուն, արդեն կարոտեց տղայի հորը. «Հողեմ ապահով գլուխդ»:

Լուսամուտը մի վայրկյան ավելի դեղնեց, մայրն ուրեմն տաշտակի մեջ տաք ջուր լցրեց հոր ոտքերի համար, և գոլորշին բռնել էր լուսամուտը: Աղջնակն ապակու հտևը չէր. թախտից թերևս իջել էր ու պտտվում էր տաշտակի շուրջը. մայրը գուցե խղճա ու թույլ տա հոր ոտքերն ինքը լվանա: Այրի կանայք գալիս են այդ տղամարդուն նայելու, տանը բոլորն ուզում են այդ տղամարդու ոտքերը տաք ջրով տրորել, ձմեռանոցի կանայք նրա շուրջը պըտըտվել և ափսոսանքով են տեսել, որ դուռը նա արդեն սարքեց, արդեն կախում է, հիմա գնալու է:

Նրա ոտքերի ջուրը մայրը դուրս բերեց, շփփոցով թափեց ու լուռ ետ գնաց: Աղջնակի դեմքը դարձյալ հպվեց լուսամուտին: Լուսամուտը նորից դեղնեց. սեղանի կենտրոնում՝ կլպած, աղով խաշած կարտոլը շուռ տվեցին կանաչ մեծ թասի մեջ, նրա գոլորշին լիզեց լուսամուտի ապակիները, վրան չոր ուրց արեցին: Հրայրը հիմա աչք է դրել մեջտեղի փուխր, համարյա թե փլված կարտոլին, բայց սպասում է՝ հայրիկը վերցնի: Հայրիկը եթե չվերցնի՝ Հրայրը չի վերցնելու, քանի որ կարծելու է հայրիկը հատուկ իր համար թողեց: Այդպես միմյանց համար թողնելով՝ այդ կարտոլը ոչ ոք չի ուտելու:

Ճրագթաթից դենը հեռու ձորերում թե տղայի



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ



ներսում գայլը վայեց իր քաղցի ու մենակության մասին, վայեց երկար ու աղիողորմ: Լռեց, սպասեց ու նորից ոռնաց սառն ամայությունների վրա: Նա չէր քաշվում, առված մենակի իր կանչը սառն ամայությունների վրայով նա հղում էր իր նման քաղցած մենակներին: Հետո Քոշաքարի լեռներից Ճրագթաք ու Ճրագթաքից Ղալախ՝ շրխկալու էր քաղցած մենակների նրանց հզոր միությունը... աուուուուու՜ւ, մտքում պատասխանեց տղան, քանի որ գիտեր, որ նա, միևնույն է, անպատասխան չի մնալու, նրան արդեն որևէ տեղից պատասխանում են, աուուուուու՜...

Կաթնծիրի տակ այս պառավ, հոգնած երկիրը սառնամանիքներից ճաքեր էր տալիս, բայց ոչ մի արարած անուղի որևէ անհայտությունում լքված չէր. բոլորի հանդեպ բոլորն իրենց պարտքերը կատարել էին և փոքրիկ օջախներում հիմա փայփայում էին իրենց փոքրիկ դաշինքները:

Լուսամուտը սառչում էր. աղջնակի փոքրիկ շունչը, հորից ու մորից իբր թաքուն, հիմա չէր կարում հալել պնդացող սառույցը, թաթիկը քսելով սառույցի պղտոր սվաղը հիմա չէր պարզում, ապակու վրա մնացել էր նրա աչքի չափ մի տեղ, որ փոքրանում ու փոքրանում էր, պղտորվում ու՜ պղտորվում էր, և նրա ցուցամատի եղունգն այլևս, մայրիկից իբր թաքուն, չէր քերում, դժվար էր քերում սառույցի սվաղը: Դրսի մթնից ամեն անգամ նրա աչքին պղտոր մի աչք էր մոտենում, և վախից նա ամեն անգամ հազիվ չէր ճչում, հազիվ էր հավատում, որ դա իր աչքն է ու նույն պահին էլ մոռանում էր:

Տղային նա խանգարում էր: Տղան, տղայի միտքը, տղայի նիհար մեջքը վաղուց գիտեին, որ տղան կախարդվածի պես քաշվելու, ինքը իրենից աննկատ գնալու, հայտնվելու է գոմի սրահում հոր բեռան կողքին, մեջքը դեմ արած ծվարելու է հոր ջերմության մեջ: Մտքով տղան արդեն գնացել էր, սեղմվել էր հոր տաք շալակին, բայց աղջնակը թույլ չէր տալիս իրոք գնալ, տղան իրեն այդտեղ աղջնակի համար էր պահում:

Կյանքը իրենը արեց: Իրեն խաբելով, թե քրոջ աչքի տեղը ապակու վրա հիմա, միևնույն է, սառցակալել է, և կրկին համոզելով, թե, միևնույն է, սառցակալել է ու քույրիկն իրեն չի տեսնում, և դարձյալ խաբելով ու չխաբվելով, համոզելով, համոզվելով, բայց չգնալով... տղան վերջիվերջո մոռացավ աղջնակին էլ, իրեն էլ: Տղան տեսավ, որ ինքը սրահի շեմքին է, իր ծունկն ու ձեռքը հրում են սրահի դուռը: Մետաղե կեռը ագուցած չէր, կեռը կռճկած լիներ՝ տղան գուցե մի հավիտենություն էլ այդտեղ կանգներ, բայց ծանր ճռռալով, ճռռոցը

կոտորակվելով՝ դուռը բացվեց... Ճռճռոցը տանը թող լսեին ու հանգստանային:

Ոտքը մթի մեջ դիպավ իր սահնակին: «Դե դու էլ կորի», տղան ոտքով դեն հրեց սահնակը: Հետո տղան կանգնած էր բեռան կողքին, սեղմվում էր բեռանը և նրանից ջերմություն էր ուզում: Տղան ուշ հասկացավ, որ բեռը վաղուց է տաք եղել, հոր քրտինքը խոտի մեջ հիմա սառել է: Տղան տեսավ, որ խոտի շուրջը ինքը պտտվում է, ծվարի տեղ է փնտրում և հեկեկում առանց արտասուքի, բայց իր ուշքը գոմն է: «Ձենդ, ձենդ, ձենդ,— իրեն հրահանգեց տղան,— ձենդ կտրի՛ր»:

Գոմի տաքությունը խփվեց նրա դեմքին, և նա հասկացավ, որ գոմն է մտնում: «Թե մարդ ես՝ մի մտի՛ր», բայց մտավ, ոտից գլուխ փաթաթվեց գոմի տաքության մեջ: Մտքով՝ նա դեռ դրսում էր: «Ձես տալիս՝ մի տուր», ասաց նա, և դա խոտի բեռան հետ էր խոսում:

Միջնորմի վրայով նայեցին այծի լուռ աչքերը, իր ճարպերի, կշտության ու նիրհի միջից խոյը գոռ խռկաց: Խոյն, այո՛, դեռ կար. երևանցի աշխույժ խաբեբան, որ խաբում, շրթունքները լպրստում ու ուրախ ժպտում էր, դեռ չէր հայտնվել ու խաբել, թե ինքը ուղիղ դրամի պալատից է գալիս, 1947 թ. դեկտեմբերին դրամը չի փոխվելու, և մի կապույտ հին, այլևս անպետք թուղթ չէր տվել ու տարել խոյը և ջրալլորեն, դարձյալ ժպտալով, իր կաշվե հին բաճկոնը չէր տվել տղայի մորն ու խաբել, թե դա կարմիր կոմիսարների բաճկոն է եղել: Ասաց. «Դա մաշվել չունի, մի քիչ յուղ քսիր՝ պըրպըղա»: Այդ մի կույտ փողը գյուղկոոպի խանութը վերցրեց ու Դոեղը մի կտոր սապոն ու մի կիլո շաքար տվեց: Բայց այդ դեպքում ի՞նչ էր հոր հագին: Հայրը, ոչ, մերկ չէր. երբ սամի կտրելու համար ձյուների միջով գնաց և երբ ձմեռանոցների վրա գլխիվայրելուց առաջ արևի մեջ կանգնել էր սարի ուսին և երբ բեռան թոկերից դուրս էր եկել ու տուն էր գնում ոտի վրա քնած, մերկ չէր, հոր նիհար, լայն թիկունքին ինչ-որ շոր էր ծեփված... բանակային վերարկու չէր. հայրն ամռան օրով բանակային վերնաշապիկով վերադարձավ, ո՛չ հագին, ո՛չ գըրպաններում բանակից ոչինչ չէր բերել — պլուտ իր խոշոր ձեռներն ու բարձր ուսերը...

Երրորդ արարածն այդ գոմում կովն էր, չորրորդը՝ մոզին, հինգերորդը տղան էր: Մյուսը՝ հորթն էր մոր փորում: Տաք խավարի մեջ տղան գտավ կովի ու մոզու արանքը, ոտնաթաթերը մոզու փորի տակ խցկեց, և մոզին սարսռաց, թիկունքը սեղմեց կովի էրաթաթին, ձեռքերն իր անութների մեջ առավ, և այդ ժամանակ մյուսը մոր փորում խաղաց: Մորը նա լրիվ բնակեցրել էր, մայրը լրիվ նրանն էր, մոր մեջ նա խաղում էր, իսկ մոր կողքին կային, ջերմանում ու ապրում էին տղան ու մոզին: Կովը պապանոցը ծռեց, հոտ քաշեց ու թույլ տվեց, որ այդ այդպես լինի: Մեծագլուխ, գորշ բրդոտ մոզին գոմի վերևի ծայրին իր առանձին տեղն ու կապը ուներ, բայց չէր սիրում. մեծ գլուխը որևէ հնարով կլկալից հանում ու գալիս նստում էր մոր կողքին: Կարծում էին թաքուն դեռ ծծում է, բայց չէր ծծում, գալիս հենց էնպես նստում էր մոր կողքին, որ հիմա իրենը չէր, մյուսի՝ թաքունի մայրն էր, բայց նաև մոզու մայրն էր: Ալարկոտ, մեծագլուխ, գորշ բրդոտ այդ մոզու մասին, որ սիրում էր ճակատը քորել տղայի ոտքերով, հայրն ասում էր՝ սիրուն արարած է լինելու, և տղան չէր պատկերացնում, բայց հավատում էր: Նրանից ծծումբի հոտ էր գալիս: Յուղի ու ծծումբի խառնուրդը տղան ինքն էր քսել նրա մկնատամներին, նրա ականջների տակ ու ճակատին. երբ նա տղայով քորվում էր, մկնատամները՝ մոզու այդ քոսը, տղան ինքն էր նկատել, շատ ցուրտ օրերին նրա ջուրը տղան ինքն էր բերում, հետո դպրոցում իր ձեռքերից ծծումբի հոտ էր գալիս, մաթեմատիկայի ուսուցչուհին հոտն առավ ու ծամածռվեց:

Այդ մոզին նրանց գոմում նրանց կովի մոտ էր, կարծում էր նրանցն է, ախպերիկն ու աղջնակը կարծում էին իրենցն է, բայց նրանցը չէր: Աշնանը մի անգամ մոզին օտարվել էր, այսինքն՝ քարշ էր տրվել գյուղամեջ ու բարձրացվել պետական կշեռքի վրա: Գյուղամիջի այդքան ժողովրդի մեջ Հրայրի լացը կարկամել էր, բայց հետո, երբ ետ էին գալիս, լաց եղավ, և քանի որ ախպերիկը լաց էր լինում՝ Արմո, Արմիկ, Արմենակ անունով պատանին լաց չէր լինում, այլ տարօրինակ մի ատելություն, բոլորին ու ամեն ինչ տգեղացնող ու ոչնչացնող մի ատելություն էր ուռչում նրա մեջ... ատելություն էր ուռչում կշեռքի դեմ, որի մետաղե հարթակի վրա դողդողում էր մոզին, և տղայի մեջ քամահրանք էր կնճռոտվում մոզու դեմ, որ տանը մոր մոտ դանդաղ ու հանգիստ արարած էր, բայց կշեռքի վրա ժողովրդի մեջ վախից հանգչում էր: Մոզին կշռվեց, ուղիղ 75 կգ էր, նրա թոկը շպրտվեց տղայի երեսին, («Մունդռիկ, ինչ ես քացախ կտրել»), բայց ինչ-ինչ հաշվումներից հետո չքշվեց քաղաք, սպանդանոց: Ճշգրիտ՝ կոլխոզը, կոլխոզի նախագահը՝ ժպտալով, քանի որ կարծում էր տեսուչին խաբում է, կեսռոննանոց (500 կգ) մի եզ տվեց սպանդանոցին, մսամթերման նախիրից 500 կգ մոզի ետ առավ, 7 հատ, մի տարով վերադարձրեց տերերին: Յոթից մեկը սա էր: Եկող աշնանը սա նորից էր բարձրացվելու կշեռք ու քշվելու սպանդանոց կամ, եթե բախտը բերեր, կոլխոզի նախիր՝ եկնացու:

Կովը նրանցը չէր. տասնվեց կիլոգրամ կարագ հորթի ու երեխաների բերանից պիտի կտրվեր և ուղարկվեր հայտնի չէ ուր... Իսկ Արմո, Արմիկ, Արմենակ Մնացականյանը կարագի համն առաջին անգամ առավ տասնհինը տարեկանում, երբ համալսարանի ուսանող էր, և կաշվե առաջին կոշիկը հագավ քսանչորս տարեկանում:

# Ո՞Վ ԷՐ ՌՈԲԻՆԶՈՆ ԿՐՈՒԶՈՆ

Ռոբինզոն Կրուզո և Ալեքսանդր Սելկիրկ. այսպես են անվանում Խաղաղ օվկիանոսում գտնըվող Խուան-Ֆերնանդես արշիպելագի երկու կղզիները: Դուք գիտեք, թե ով էր Ռոբինզոն Կրուզոն, իսկ Ալեքսանդր Սելկիրկին դեռևս ծանոթ չեք:

1704 թվականին «Հինգ նավահանգիստ» եռակայմ առագաստանավի շտուրմանն Ալեքսանդր Սելկիրկը վիճեց նավապետի հետ, հայտարարելով, որ նավը վատ վիճակում է գտնվում և նրանով ծով դուրս գալը վտանգավոր է: Քանի որ վեճը տեղի ունեցավ ոչ թե ցամաքում, այլ բաց ծովի վրա, նավապետը որոշեց անմիջապես ազատվել անհնազանդ շտուրմանից: Նա Սելկիրկին ափ իջեցրեց Խուան-Ֆերնանդես արշիպելագի առաջին իսկ պատահած կղզում:

Սելկիրկն այնտեղ միայնության մեջ ապրեց չորս տարուց ավելի, սնվելով այծի ու կրիայի մսով, մրգերով, ձկով, մինչև որ երջանիկ պատահականությամբ 1709 թվականի փետրվարին նրան վերցրեց բրիստոլյան մի նավ:

Սելկիրկի մասին խոսել սկսեցին, անգլիական թերթերում ու ամսագրերում հայտնվեցին նրա դեգերումների նկարագրությունները, որոնց, անկասկած, ծանոթացավ և Դանիել Դեֆոն: Ենթադրվում է, որ նա հանդիպել է Սելկիրկին Բրիստոլում 1718 թվականին, քանի որ երկուսն էլ միևնույն ժամանակ գտնվել են այդ քաղաքում:

Ալեքսանդր Սելկիրկը դեռ ողջ էր, երբ 1719 թվականին Դեֆոն ընթերցողներին ծանոթացրեց իր Ռոբինզոն Կրուզոյի հետ:

Նկ. ՌՈՒԲԵՆ ԹՈՒՄԱՍՅԱՆԻ





## Ո՞ւր էին լողում Կոլումբոսի նավերը

Պարզ է, դեպի Հնդկաստան. այսպես էին համոզված բոլորը մինչև վերջին ժամանակներս: Պատմաբաններն այն կարծիքին էին, որ Քրիստափոր Կոլումբոսը Ամերիկան հայտնագործել է պատահաբար, դեպի Հնդկաստան տանող ծովային ճանապարհ փնտրելիս: Սակայն վերջին ժամանակներս ավելի ու ավելի հաճախ է կարծիք հայտնվում այն մասին, որ բոլորովին էլ այդպես չի եղել, որ Կոլումբոսը շատ լավ էլ իմացել է, թե ուր է գնում:

Կոլումբոսին հեռավոր նավարկության ուղարկելով, իսպանական արքունիքը նախապես գիտեր, թե ինչպիսին է լինելու ճանապարհորդության արդյունքը: Այլապես դժվար է բացատրել ժլատ Ֆերդինանդ արքայի և նրա կնոջ՝ Իզաբելլայի արտակարգ շռայլությունը. Կոլումբոսը ստացել էր երկու միլիոն ոսկի պեսո և երեք նավ՝ ստվար անձնակազմով, նրան խոստացել էին ոչ միայն «ծովերի ու օվկիանոսների ադմիրալի» տիտղոս, այլև փոխարքա նոր հայտնագործած բոլոր հողերի:

Կանարյան կղզիներում նավերից յուրաքանչյուրի կապիտանը Կոլումբոսից ստացավ մի ծրար, վրան գրված. «Բացե՛լ, երբ փոթորիկն անցնի»: Ծրարում հրաման է եղել, որ երբ Կանարյան կղզիներից քարավանը գտնվի 700 լիգ (մոտ 4150 կիլոմետր) հեռավորության վրա, այլևս չպետք է գիշերով լողալ: Կոլումբոսը գիտեր, թե երբ պետք է ծովագնացները հանդիպեին Կարիբյան ծովի կղզիներին, այդ պատճառով էլ նա արգելել էր ընթանալ գիշերով, որպեսզի ցամաքը չվրիպեն: Իսկ մինչ այդ նավերը լողում էին գիշեր-ցերեկ, ինչպես լինում է այն դեպքում, երբ ծովակալը միանգամայն վստահ է բռնած ուղղության նկատմամբ:

Ուշագրավ է այն փաստը, որ Կոլումբոսը նավարկության ընթացքում զույգ օրագիր էր պահում, մեկը՝ իսկական, իր համար, մյուսը՝ կեղծ, անձնակազմի համար, որին Իսպանիայից բաժանող ահռելի տարածությունը կարող էր շփոթմունք, անհանգստություն պատճառել: 1492 թ. հոկտեմբերի 11-ին Կոլումբոսը յուրայիններին հայտարարում է, որ վաղը կտեսնենք ցամաքը: Եվ իրոք, հոկտեմբերի 12-ին նավերը ժամանում են Նոր-Աշխարհ:

Այս բոլոր փաստերը խոսում են այն մասին, որ Կոլումբոսը ուներ անհրաժեշտ ինֆորմացիա, որպեսզի ընտրած ուղղության նկատմամբ մազաչափ չկասկածեր:

Նավարկության օրագրերի մանրազնին վերլուծությունը հաստատում է, որ ծովակալը օվկիանոսի անընդգրկելի տարածության վրա իրեն շատ վստահ էր զգում: Կանարյան կղզիներից հետո նավերը հաստատուն կերպով գնում էին 28-րդ հորիզոնականով (Ֆլորիդայի աշխարհագրական լայնությամբ), ամբողջ ժամանակ ընթանալով արևմտյան քամիների զոնայով, որը տանում էր նրանց Կարիբյան ծովի կղզին: Ավելի լավ ծովային ճանապարհ հին աշխարհից Նորը մինչև օրս չի գտնված:

Այս բոլորով հանդերձ, Կոլումբոսը իր տերերի շահերից ելնելով, իր անձնակազմին համոզել էր, որ նորահայտ երկիրը Ասիան է, և որ դրանում ոչ մի կասկած լինել չի կարող: Ծովակալը բնավ մտադիր չէր իր հայտնագործությունը հրապարակել, դրանով նա կատարում էր Ֆերդինանդ թագավորի կամքը, իսկ վերջինս շահագրգռված էր աշխարհից գաղտնի պահել նոր հայտնագործված երկրի հարստությունները, շատ հիմնավոր պատճառներով: Կոլումբոսի հայտնագործության պատմությունը այսօր ներկայանում է մեզ իբրև մի անավարտ սենսացիոն երևույթ: Արդյոք որևէ մեկը կբացի՞ այս գաղտնիքը:




# ԼՈՒՅՍԻ ԴՈՒՌ, ԼՈՒՅՍԻ ԴՈՒՌ ԲԱՑՎԵՑ

**1828** թ. փետրվարի 10-ին Թավրիզից Թեհրան տանող ճանապարհի վրա գտնվող Թուրքմենչայ փոքրիկ գյուղում Կովկասի կառավարչապետ գեներալ Իվան Պասկևիչի և պարսից թագաժառանգ Աբաս-Միրզայի միջև կնքվեց պայմանագիր, որի համաձայն Արևելյան Հայաստանը ազատագրվեց պարսկական տիրապետությունից և միացվեց Ռուսաստանին: Հայ ժողովրդի մի հատվածը թոթափեց պարսկական բռնապետության դարավոր լուծը և իր կյանքն առհավետ կապեց Ռուսաստանի և ռուս ժողովրդի հետ: Այդ պատմական պայմանագրով Պարսկաստանում և Թուրքիայում ապրող հայերին հնարավորություն ընձեռնվեց ներգաղթելու Արևելյան Հայաստան և շենացնելու նրա ավերված ու ամայացած բնակավայրերը:

Թուրքմենչայի պայմանագրի նախօրյակին Հայաստանը շարունակում էր բաժանված մնալ արևելյան երկու բռնակալ պետությունների՝ Թուրքիայի և Պարսկաստանի միջև: Նրա արևմտյան մասը գտնվում էր Թուրքիայի, իսկ արևելյանը՝ Պարսկաստանի տիրապետության տակ: Երկու մասերն էլ ենթարկված էին այդ երկրներում գոյություն ունեցող վարչական բաժանման: Արևմտյան Հայաստանում ստեղծվել էին փաշայություններ, իսկ Արևելյանում խանություններ:

Արևելյան Հայաստանում եղած ամենամեծ և ուժեղ իշխանություններից էր Երևանի խանությունը, որն իր մեջ ընդգրկում էր Արևելյան Հայաստանի կենտրոնական մասը և տիրապետող դիրք ուներ իր հարևանների նկատմամբ:

Երևանի խանը մի կատարյալ բռնակալ-միապետ էր, որի ձեռքում էր երկրի վարչական, զինվորական և իրավական ղեկավարության սանձերը: Նա անձամբ դատ ու դատաստան էր տեսնում հանցագործության մեջ մեղադրվողների հետ, տուգանում էր, ֆիզիկական խոշտանգումների, անդամահատման կամ մահվան դատավճիռներ հանում, որոնք ի կատար էին ածվում անմիջապես: Համարյա նման իրավունքներ ունեին նաև Արևմտյան Հայաստանում իշխող թուրք փաշաները:

## ԹԵՎԱՎՈՐ ԱՅԳԵՊԱՆՆԵՐ

*ՄԻՔԱՅԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

Ծտաժողովը մտավ այգի,
Իսկույն անցավ աշխատանքի.
Ճյուղերի մեջ պտղավորված
Կտկտոցն է լսվում նրանց.
Թևկուզ ճյուղից ճյուղ են թռչում,
Ոչ մի պտղի չեն էլ դիպչում:
Զուր է թրթուրն այն խորամանկ
Եկել պահվել տերևի տակ.
Ծոր է հագել կանաչ գույնի,
Որ տերևի նման լինի:
Սակայն ծտերն իսկույն գտնում,
Կտուցները զգույշ մեկնում
Ու մաքրում են՝ թիկ-թա՜կ, թիկ-թա՜կ.
Ո՜չ մի թրթուր տերևի տակ:
Իրենք սնվում, այգին փրկում,
Հետն էլ ուրախ երգ են երգում:
Ա՜յ թևավոր այգեպաններ,
Այգեպանի օգնականներ:

## ՀԱՅՐՍ ԴԱՇՏԻՑ ՏՈՒՆ ԵԿԱՎ

*ՊԱՏՎԱԿԱՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ*

Երեկոյան, երբ մութն ընկավ,
Հայրս հոգնած՝ դաշտից եկավ:
Ուսին ամպի արցունք բերեց,
Ծիլ ու ծաղկի բուրմունք բերեց,
Առվի զուլալ կարկաչ բերեց,
Հովի նվագ ու կանչ բերեց,
Թռչունների դայլայլ բերեց,
Աստղերի խինդ ու փայլ բերեց,
Բերեց անափ ուրախություն,
Հայրական սեր ու մաքրություն...
Ինչե՜ր ասես, որ չբերեց,
Բերեց ու մեզ լիացրեց:

*Նկ. ԿԱՐԻՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*



Թուրքմենչայի պայմանագրի կնքումը:

Թե՛ Արևմտյան Հայաստանում և թե՛ Արևելյան Հայաստանում տնտեսությունը ծայր աստիճանի քայքայված էր, անհրաժեշտ պայմաններ չկային առևտրի ու արհեստների զարգացման համար: Հողագործները հողի տերը չէին, այն պատկանում էր պետությանն ու շահագործող դասակարգին, ուստի և հողը մշակելու համար գյուղացիները պարտավոր էին բնամթերքով հարկեր տալ նրանց: Ստացված բերքի մեկ երրորդը գնում էր պետությանը, իսկ մեկ տասներորդը՝ կալվածատերերին: Հողագործները պարտավոր էին հարկ վճարել նաև ընտանիքի և նրա յուրաքանչյուր անդամի համար: Գյուղացիները վճարում էին նաև անասունների, այգու և արոտավայրերից օգտվելու համար: Այս ամենից զատ, գյուղացիները պարտավոր էին ձրի աշխատել խանի և իրենց ֆեոդալների համար: Նրանք պարտավոր էին մթերքներով, գիշերելու տեղով և փոխադրականով ապահովել իրենց գյուղերով անցնող խանական պաշտոնյաներին, որոնք հյուրընկալվելուց և հյուրասիրվելուց հետո, որպես կանոն, գյուղացիներից նվեր էին ստանում հյուրասիրվելու, ատամը մաշելու համար, որը հենց այդպես էլ կոչվում էր «ատամի վարձ»: Աշխատավորները շատ տուրքեր ու մուծումներ էին անում նաև եկեղեցուն, որոնց մի մասը պարտադիր հարկերի բնույթ էր ստացել:

Տնտեսական դաժան շահագործմանն ու կեղեքմանը միանում էին նաև ազգային ու կրոնական հալածանքները: Երևանի խանը առանձնապես վատ էր վարվում հայերի հետ, երբ դրսից նրան սպառնում էին քրիստոնյա ուժերը: Հայտնի է, երբ Վրաստանի Հերակլ 2-րդ թագավորը 1779 թ. պաշարել էր Երևանը, Հուսեյին-Ալի խանը իր ողջ ռարկությունը թափում է հայերի գլխին՝ մեղադրելով նրանց վրացիներին Երևան կանչելու մեջ:

«Մարդ ո՞ր հողը տա գլխին,— գրել է Խաչատուր Աբովյանը,— ինչ ուզում են, էն են անում: Դատաստան չկա, իրավունք չկա... աղջիկն ասես, քաշում են, տղեն ասես՝ տանում, շատ անգամ թուրքացնում, հավատից հանում, շատ անգամ էլ գլուխը կտրում, էրում, նահատակում: Ո՛չ տունն է իրանը, ո՛չ մալը, ո՛չ ապրանքը»:

Պատերազմների ժամանակ խաները տեղահան էին անում բնակիչներին, նրանց փակում ամրացված վայրերում: Այդ ընթացքում թալանվում էր աշխատավորների ունեցվածքը, ոչնչացվում էին նրանց տները, այգիները, և վերադառնալուց հետո նրանք ամեն ինչ ստիպված էին սկսելու սկզբից:

Աշխատավոր բնակչությունը չէր դադարեցնում պայքարն իր աշխարհիկ և հոգևոր ֆեոդալների դեմ: Այդ պայքարն արտահայտվել է երբեմն ֆեոդալների վրա հարձակումների, երբեմն էլ հարկերը վճարելուց խուսափելու ձևով: Երևանը դարձել էր հայ ազատագրական շարժման կենտրոններից մեկը: Երևանի բնակիչները, որոնք գտնվում էին պարսից հարստահարողների մշտական ճնշման ու շահագործման ներքո և շարունակ ենթարկվում էին պատերազմների, արշավանքների ու ներքին կռիվների արհավիրքներին, երազում էին ռուսական զորքերի օգնությամբ ազատագրվել: Բայց 18-րդ դարի վերջերին այդ դեռևս անկարելի էր:

1801 թ. սեպտեմբերի 12-ին Արևելյան Վրաստանը միացվեց Ռուսաստանին: «Այդ նշանավոր օրվանից,— գրել է վրացական նշանավոր բանաստեղծ Իլյա Ճավճավաձեն,— Վրաստանը հանգստություն ձեռք բերեց... Տագնապալից, խոշտանգված երկիրը ազատվեց ավերումից և ջախջախումից, հանգստացավ պատերազմներից և հարձակումներից»: Պատմական այդ առաջադեմ գործողությունը ոչ միայն նշանակալից երևույթ էր վրաց ժողովրդի, այլև անդրկովկասյան մյուս ժողովուրդների կյանքում, դրանով սկիզբ դրվեց Անդրկովկասը Ռուսաստանին միացնելու գործին: Ռուսական կառավարության առաջնահերթ խնդիրներից մեկն այժմ դարձավ Արևելյան Հայաստանի ազատագրումը:

Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆ
Պատմական գիտությունների դոկտոր



# ՖԻՆԼԱՆԴԻԱ, ԼՃԵՐԻ ԵՐԿԻՐ

ՄԱՐԳՈ ՂՈՒԿԱՍՅԱՆ

## 3. «ՖԻՆԼԱՆԴԻԱՅԻ ՏՈՒՆԸ»

— Մի քանի տարի առաջ մերձմոսկովյան Սուխանովո ամառանոցում ծանոթացա 93-ամյա ճարտարապետ Վինոգրադովի հետ: Դարասկզբին նա Մոսկվայում մտերմական կապերի մեջ է եղել Մարտիրոս Սարյանի և Ալեքսանդր Թամանյանի հետ: Թամանյանի մասին նա ասաց.

— Իր կառուցած շենքերով Թամանյանը մայրաքաղաք Երևանին ուրույն դեմք տվեց:

Այդ կարճ նախադասությունը, որն ասվեց մեծ հարգանքով, ես լսեցի հպարտությամբ և արժանապատվությամբ:

Իրոք, Երևան ժամանած յուրաքանչյուր օտար հյուրի մենք ինչպիսի՜ հպարտությամբ ենք ցույց տալիս ակադեմիկոս Ալեքսանդր Թամանյանի ստեղծագործությունները: Կառավարական տուն, օպերայի և բալետի թատրոն, հանրային գրադարան...

Ճիշտ նույնպես Հելսինկիում խորին հարգանքով ու հիացմունքով են խոսում ֆինն ճարտարապետ, ակադեմիկոս Ալվարո Ալտոյի ստեղծագործությունների մասին: Նրա կառուցած շենքերից մի քանիսը մենք տեսանք Հելսինկիում: Դրանցից մեկն առանձնահատուկ տպավորություն թողեց:

Ֆիննական ժամանակակից ճարտարապետության նշանավոր այդ հուշարձանը կոչվում է «Ֆինլանդիայի տուն»: Կառուցվել է 1971 թվականին, նախատեսված է միջազգային կոնգրեսների և համերգների համար:

Հիշո՞ւմ եք, 1975 թվականին, Հելսինկիում տեղի ունեցավ Եվրոպայի անվտանգությանը և համագործակցությանը նվիրված միջազգային կոնգրեսը: Հեռուստացույցով մենք դիտում էինք դահլիճը և լսում ելույթները: Այդ շքեղ դահլիճը «Ֆինլանդիայի տան» մեծ դահլիճն էր: Սակայն... շենքը դիտենք նախ դրսից:

«Ֆինլանդիայի տունը» գտնվում է Տեելեն-Լահտի լճի ափին, Հեսպերիա զբոսայգում: Ծավալներով չափազանց մեծ այդ շենքը հարմարեցված է կիսաթեք տեղանքին և երեսապատված իտալական Կարարա քաղաքի մարմարով: Պատկերացրեք, լայնածավալ ճերմակ մարմարե ճակատը, դիմացը՝ լճի կապույտ հայելին, երեք կողմը՝ կանաչ զբոսայգի: Առաջին տպավորությունը հանդիսավորության զգացումն է, ապա այն, թե ինչքան հանդարտ ու վեհորեն է շենքը համադրված բնության հետ: «Ֆինլանդիայի տան» դահլիճներում համերգներ են տվել աշխարհի նշանավոր երգիչներն ու երաժիշտները: Սակայն ամենակարևոր իրադարձությունն այստեղ տեղի է ունեցել 1975 թվականին: Այս դահլիճում են հնչել Եվրոպայի անվտանգությանը և համագործակցությանը նվիրված կոնգրեսի պատվիրակների խոսքը: Այստեղ է ընդունվել պատմական նշանավոր որոշումը, համաձայն որի Եվրոպայի բոլոր երկրները պարտավոր են ապահովել խաղաղությունն ու մարդու ապատությունը: Այն գիտակցությունը, որ հենց այստեղ է տեղի ունեցել այդքան կարևոր մի խորհրդակցություն, մարդու սիրտը բարությամբ ու խանդաղատանքով է լցվում նախագծողի և կառուցողների հանդեպ: Եվ ահա, այդ նույն դահլիճի բազկաթոռներին նստած, մենք լսում ենք բացատրություններ շենքի մի քանի առանձնահատկությունների մասին:

Դահլիճը նախատեսված է 1718 մարդու համար: Ձայնային մեկուսացումն այնպես է արված, որ ապահովված է բացարձակ լռությունը: Պատերին ամրացված կապույտ և սպիտակ փայտե ձողերը ակուստիկայի համար են: Մոխրագույն, փափուկ հատակը խլացնում է քայլերի աղմուկը: Ջերմությունը և օդի թարմ հոսանքը ֆիլտրերով մատուցվում են առաստաղից և դուրս «հոսում» հատակի եզրերով:

Բեմը չորս հարկանի է. անհրաժեշտության դեպքում կարելի է հարթել և ստանալ մի մեծ բեմ: Երգչախմբի աթոռները և ռոյալը ավտոմատ իջեցվում-բարձրացվում են: Երգչի պահանջով օդի խոնավությունը կարելի է ավտոմատ սարքերով կարգավորել: Իսկ

Սկիզբը՝ «Պիոներ» № 4, 5.

եթե երգիչը կամ դաշնակահարը չգոհացնեն ունկնդիրներին և ներկաններն արտահայտեն իրենց դժգոհությունը, ապա կատարողին իր գործիքի հետ ավտոմատորեն կիջեցնեն բեմից:

Հետաքրքիր են դահլիճի դռները: Աչքի է զարնում սևաթույր գույնը, ապա և՝ նյութը: Ինչի՞ց է սարքված: Ուշադիր զննելու դեպքում նույնիսկ գլխի ընկնելը դժվար է, քանի որ՝ ո՞ւմ մտքով կանցներ, թե ամենահամապատասխան շինանյութը այդ դռների համար ձիու մազն է եղել: Ձիու մազից հյուսածո երկշերտ կտավի արանքում տեղավորված էր 5—6 սմ հաստության խողանակային շերտը, և, ինչպես հավաստիացրեց բացատրողը, այդպիսի անսովոր շինանյութից պատրաստված դուռը արգելակում էր ձայնի ներթափանցումը ճեմասրահներից դեպի դահլիճ: Դրան ավելացնենք այն, որ բացվում ու փակվում էր բացարձակ անաղմուկ:

Դիտեցինք նաև փոքր դահլիճը: Այստեղ նույնպես ամեն ինչ բարձր ճաշակով էր և հարմարավետ: Միջազգային կոնգրեսների ժամանակ փոքր դահլիճում նստում են աշխարհի տարբեր մայր ցամաքներից ժամանած լրագրողները: Մեծ դահլիճում կատարվող իրադարձությունները նրանք դիտում և լսում են հեռուստացույցով: Իսկ եթե երկրների դելեգատները այնպիսի հարցի շուրջ են խորհրդակցում, որի մասին չեն ուզում հայտնել լրագրողներին, հեռուստացույցն անջատում են:

Ֆիննական ճարտարապետության այս նշանավոր հուշարձանի կառուցման ավարտին պարզվել է, որ արտասովոր թերություն ունի: Այդպիսի մեծ շինության մեջ անհնար էր լույս գնալ առանց սինթետիկ նյութերի: Հատակը, բազրիքները... Երբ մարդիկ քայլում էին հպվելով բազրիքներին՝ էլեկտրական կայծ, բարձրատիճան հյուրերը դեմ-դիմաց գալիս միմյանց ձեռքով բարևում էին, և այ քեզ բան՝ ձեռքերն իրպվելիս դարձյալ էլեկտրական կայծ: Զափազանց անախորժ այդ վիճակից դուրս գալու համար հատակի փափուկ ծածկը և բազրիքները փոխարինել են ավելի հարմարավետ նյութով: Չնայած այդ թերությունը վաղուց է վերացված, սակայն ֆինները հումորով պատմում են օտար հյուրերին և տուրիստներին: Թերևս նպատակ հետապնդելով նրանց ուշադրությունը հրավիրել՝ զգուշացե՛ք, հանկարծ ձեզ մոտ չկրկնվի նույն սխալը: Ժամանակակից շինարարության պայմաններում ամեն ինչ պետք է մարդուն բավականություն պատճառի:

(Շարունակելի)

ԻՎԱՆ ՍՎԱՐՆԻԿ

(Ուկրաինացի առակագիր)

## ՆՎԵՐ

Սատանայի դրդմա՞մբ, թե ինչ,
Միշտ չեմ կարող ասել ոչինչ,
Զարթնեց Ծլդիկն առավոտ վաղ,
Մարգը մտավ ցողաթաթախ,
Վազեց դես-դեն,
Հափռեց մի քիչ կանաչ կոտեմ,
Մի քիչ սամիթ
Ու թրթնջուկ
Ու, պո՞ւկ,
Տարավ պարոն Գայլին:
— Վերցրո՛ւ,— ասաց,— ո՞վ նրկնային:—
Ու Ծլդիկը երեք անգամ
Գլուխ տվեց պոչից էլ ցած:
— Կեցցե՛ս,— ասաց Գայլն զգացված,—
Բայց այսքան էլ տանջանք ու տո՞ւրք...
Նապաստակի թարմ մսի հետ
Նաև սամիթ,
Ու թրթնջո՞ւկ:







Նկ. ԱՆՈՒՇ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ

## ԽՈԶԸ

Խոզը մտավ ցուցահանդես
Ու հայելու մեջ իրեն գտավ.
— Ա՜յ քեզ հրաշք,
Ա՜յ քեզ կտավ...
Միայն սրա դունչը կլոր
Նկարներին արժե բոլոր:
Այս գործն իբրև հրաշալիք
Պետք է պահել
Ու պահպանել
Սերունդների համար գալիք:

Թարգմ. ՎԱՐԴԳԵՍ ԲԱՂԱՅԱՆԻ

# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*
*բանասիրության դոկտոր*

## 2. Խոսքի տիրապետման ամենալավ հասակը

Դա մանուկ և պատանի հասակն է, նույնիսկ՝ ավելի մանուկ, քան պատանի հասակը։ Գիտնականներին զարմանք է պատճառում, թե ինչպիսի դյուրությամբ մանուկները խոսել են սովորում, ինչպես ասում են՝ «լեզու են առնում»։

Դուք կարդացե՞լ եք Քիպլինգի «Մաուգլին», պատմությունն այն երեխայի, որին օրորոցից գայլերը փախցնում են, և նա հասակ է առնում գայլերի մեջ։ Գիտության մեջ նկարագրված է այդպիսի մի քանի տասնյակ դեպք և բոլորն էլ նույն հետևանքով. երբ այդ մանուկները վերադարձել են մարդկային հասարակություն, այլևս անհնար է եղել նրանց լեզու սովորեցնել։ Ինչո՞ւ։ Որովհետև նրանք անվերադարձ կորցրել են այն հասակը, որ սահմանել է բնությունը լեզու սովորելու համար։ Ռուս հիանալի գրող ու գիտնական Կորնեյ Չուկովսկու համոզմամբ, դա երկուսից հինգ տարեկան հասակն է։ «Առհասարակ ինձ թվում է,— գրել է նա,— որ սկսած երկու տարեկանից ամեն մի երեխա մի կարճ ժամանակով դառնում է հանճարեղ լեզվագետ, իսկ հետո, հինգ-վեց տարեկանից, այդ հանճարը կորցնում է»։ Ի՞նչ է նկատի ունեցել Չուկովսկին։ Այն, որ այդ երկու-երեք տարում երեխան, ինքն էլ չընկատելով, թեթև ու անճիգ յուրացնում է այնքան շատ բառեր, քերականական կանոններ, որ չափահաս մարդը երբեք չի կարողանա։ Դա մտավոր հսկայական աշխատանք է, մի հազվագյուտ շնորհ, որ մայր բնությունը պարգևում է մարդուն։ Այնպես որ, Լև Տոլստոյը զուր չի ասել, թե ինքը մինչև հինգ տարեկանն ավելի շատ բան է սովորել, քան դրանից հետո ամբողջ կյանքում։

Ի՞նչ է հետևում այս ամենից. այն, որ մարդու խոսքի կուլտուրան սկսում է կազմավորվել ամենավաղ հասակից։ Այդ դեպքում ինչո՞ւ ենք խոսք բացում դրա մասին, չէ՞ որ մեր ընթերցողները վաղուց ի վեր անցել են այդ հասակը։

Երկու նպատակով։

Ճիշտ է, երկուսից հինգ տարեկան հասակը լեզու սովորելու ամենաբուռն շրջանն է, բայց դեռևս չգիտակցված այդ շրջանին հաջորդում է լեզվի ուսուցման գիտակցական շրջանը՝ դպրոցական հասակը։ Այդ ժամանակ ևս սովորելը, յուրացնելը, մտքում պահելը շատ ավելի հեշտ է, քան հետագա տարիներին։ Ուրեմն և թանկ, շա՜տ թանկ պետք է գնահատել պատանեկան տարիները։ Երբեք չպիտի կարծել, թե հետո նույն հաջողությամբ ձեռք կբերվի այն, ինչ բաց է թողնվել պատանեկան տարիներին։ Եթե դու այդ հասակում «Թոմ Սոյերը» կամ «Խորհրդավոր կղզին» չես կարդացել, հետո այդ գրքերից նույն բավականությունը չես ստանա։ Եթե այդ հասակում ինչ-ինչ գիտելիքներ, նաև լեզվին վերաբերող գիտելիքներ ձեռք չես բերել, հետո դժվար է լինելու։ Ես ունեմ մի ընկեր, բավականաչափ զարգացած մարդ, որ հաճախ նեղն է ընկնում այբուբենն անգիր չիմանալու պատճառով, հատկապես բառարանի ու հանրագիտարանի հետ գործ ունենալիս։ Ժամանակին չի սովորել, և այդպես էլ մնացել է չիմացած։ Ճանաչում եմ մեկին էլ, որ չի կարողանում համբույր բառը ճիշտ արտասանել (ասում է՝ համբյուր, և աններելիորեն անհամացնում է այդ գեղեցիկ բառը)։ Ժամանակին սխալ է սովորել, և այդպես էլ մնացել է, հասկանում է, որ սխալ է արտասանում, բայց չի կարողանում սխալը շտկել։ Ստենդալի «Կարմիրը և սևը» վեպի հերոսը մի բառ շարունակ սխալ է գրում, և այդ սխալը գալիս է դպրոցական հասակից։ Ֆրանսիական գրականագետների հավաստմամբ, դա վերաբերում է հենց վեպի հեղինակին, նա է արել այդ սխալը։

Ասելս այն է, որ դպրոցական հասակում երբեք չպետք է այսպես մտածել՝ ոչինչ, հետո կսովորեմ։ Հետո չկա՛, առանց այն էլ հետո շատ բան է մնում սովորելու։ «Հետո»-ն ծույլերի գործն է, զուր չէ, որ ժողովուրդն ասում է՝ ով ալարի, ո՛չ դալարի։

Հիմա՝ մեր այս զրույցի երկրորդ նպատակի մասին։

Դուք, սիրելի պատանիներ և աղջիկներ, պետք է իմանաք, որ, ճի՛շտ է, ձեր կրտսեր քույրերն ու եղբայրները դպրոց չեն գնում, բայց, իրենք էլ չիմա-



«Կարմիր բանակի մուտքը Հայաստան», ՍԵԴՐԱԿ ԽԶՐԹՅԱՆ, Երևան, Հ. Կոչոյանի անվ. մանկ. գեղարվեստի դպրոց



«Գիքորը», ԱՎԵՏԱ ԿԻՐԱԿՈՍՅԱՆ Արթիկի նկարչական դպրոց

## ՆՎԻՐՎԱԾ ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅԱՆ 60-ԱՄՅԱԿԻՆ

Հայաստանի նկարիչների տանը բացվեց հանրապետության գեղարվեստական դպրոցների սաների նկարչական աշխատանքների ցուցահանդեսը՝ նվիրված լենինյան կոմերիտմիության 60-ամյակին:

Ցուցահանդեսին մասնակցող քսաներկու շրջաններից առանձնապես աչքի ընկան Արթիկի, Հոկտեմբերյանի, Լենինականի ու Երևանի գեղարվեստական դպրոցները:

Հոկտեմբերյանի դպրոցը, որն ամեն հաշվետու ցուցահանդեսի ժամանակ նոր անակնկալներ էր մատուցում, այս անգամ հանդես եկավ գլխավորապես իր սաների գոբելեն աշխատանքներով:



«Շինհրապարակում», ՄԱՐՏԻՆ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ Լենինական, Մերկուլովի անվ. նկարչական դպրոց



Գոբելեն, Նոյեմբերյանի նկարչական դպրոց

նալով, կյանքի ճանաչողություն ու լեզվի իմացություն են ձեռք բերում:

Մեծերը, ուրեմն նաև դուք, պետք է օգնեք նրանց այդ դժվար գործում: Ինչո՞վ: Նրանց շուրջը լեզվական հարուստ և գեղեցիկ միջավայր ստեղծելով, նրանց անթիվ-անհամար (ձեզ համար գուցե և ձանձրալի) հարցերին պատասխանելով, նրանց համար հեքիաթներ, առակներ և այսպիսի սքանչելի ոտանավորներ կարդալով.

Հուռին գնաց բանջարի,
Բանջար չեղավ՝ խոտ եղավ,
Խոտի տակին ծիտ եղավ,
Ծըլվըլալեն դուրս թռավ:
Ծիտը թռավ գերանին,
Նանաչ խոտը բերանին:
(Հ.Թումանյան)

Ձեր մտքով չի էլ անցնում, թե այս և սրա նման ուրիշ ընտիր բանաստեղծություններ ի՞նչ անգին նըվերներ են երեխայի համար: Եվ ինչո՞ւ միայն երեխայի, դո՛ւք էլ պետք է զգաք դրա համն ու թովչանքը՝ որքա՜ն անպաճույճ տողեր, որքա՜ն կյանք ու շարժում՝ այս մի քանի տողի մեջ, խինդ ու ժպիտ: Վստահ եղեք, որ խոսքի արվեստի այսպիսի գոհարները մանկուց լսող, սովորող, անգիր անող մանուկն արդեն իսկ յուրացնում է մայրենի լեզուն, վարժվում է ազգային լեզվամտածողությանն իր ամենալավ նմուշներով:

Այսպես ուրեմն՝ լավ խոսելու շնորհքը սկսվում է մշակվել մանուկ հասակից: Սկսվում է, բայց չի ավարտվում: Բայց ի՞նչ ասել է՝ լավ խոսել, լավ գրել: Ո՞րն է դրա առաջին նշանը: Այդ մասին՝ հաջորդ անգամ:



# ԲՆՈՒԹՅԱՆ ՏԱՐՐԵՐԻ ՓՈԽԱԴԱՐՁ ԿԱՊՆ ՈՒ ՊԱՅՄԱՆԱՎՈՐՎԱԾՈՒԹՅՈՒՆԸ

## 1.— ՆՅՈՒԹԵՐԻ ՄԵԾ ՇՐՋԱՆԱՌՈՒԹՅՈՒՆԸ ԲՆՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Բնության բոլոր տարրերը, օրգանիզմները և երևույթները հազարավոր անտեսանելի թելերով կապված են մեկը մյուսի և տիեզերքի հետ: Այդ կապերը ավելի բազմազան դարձան միլիարդավոր տարիներ առաջ, երբ առաջացավ կյանքը: Դրա հետևանքով նախկին զուտ գեոքիմիական կապերը դարձան կենսագեոքիմիական: 300—400 միլիոն տարի առաջ, երբ ցամաքի վրա առաջացավ բուսականությունը, այդ կապերը դարձան էլ ավելի բարդ ու բազմազան: Կենդանի նյութը խորը փոփոխություններ առաջացրեց օվկիանոսներում, մթնոլորտում, երկրի կեղևի մակերեսային շերտում: Ձևավորվեց հողածածկույթը և առաջացավ բազմակոմպոնենտ բաց համակարգը՝ կենսոլորտը, որի սահմաններում ձևավորվեց նյութերի ու էներգիայի մեծ շրջանառությունը:

Կյանքը պայմանավորված է արեգակնային էներգիայով: Նրա շնորհիվ է կատարվում ֆոտոսինթեզը՝ օրգանական նյութի սկզբնաղբյուրը: Դա կենսոլորտի գոյության առաջին պայմանն է: Այն, ինչ կենդանի է, ապրում է մեր շրջապատում, իր գոյությամբ պարտավոր է տիեզերական հրաշագործ երևույթին՝ ֆոտոսինթեզին: Կյանքով հագեցած կենսոլորտը կազմված է անթիվ-անհամար կենսագեոցենոզներից (բույսերի, կենդանիների և բնական միջավայրի համակեցություններ) և էկոսիստեմներից (անտառներ, տափաստաններ, ճահիճներ, անապատներ և այլն), որոնք մթնոլորտի և համաշխարհային օվկիանոսի հետ կապված են կոշտ, հեղուկ և գազային նյութերի մշտական և օրինաչափ նյութափոխանակությամբ:

Ցամաքի և համաշխարհային օվկիանոսի էկոսիստեմների բազմակողմանի ու բազմազան կապերին նպաստում են մթնոլորտային տեղումները, աերոսուսպենզիաները (օդում կախված մեծ մասամբ վնասակար նյութեր), ինչպես նաև ցամաքի և ջրային միջավայրի միջև տեղի ունեցող կենդանի և մեռած զանգվածների փոխանակությունը:

Այս բոլորի հետևանքով միլիարդավոր տարիների ընթացքում ստեղծվել է կենսագեոքիմիական մեծ շրջանառությունը և քիմիական տարրերի օրինաչափ ու նպատակասլաց տեղաբաշխումը բնության մեջ:

Սակայն մարդու հանդես գալու հետ միասին կենսագեոքիմիական մեծ շրջանառությունը արմատական փոփոխություններ կրեց: Իր գոյության սկզբնական շրջանում մտնելով այդ շրջանառության օղակների մեջ, մարդը իր գործունեությամբ ոչընչով չէր տարբերվում մյուս կենդանիներից: Հետագայում, երբ զարգացան գիտությունը, արդյունաբերությունը, գյուղատնտեսությունը, տրանսպորտը, մարդու տնտեսական գործունեությունը ընդգրկելով ողջ կենսոլորտը, որակական ու քանակական մեծ փոփոխություններ առաջ բերեց կենսոլորտում, սպառնալիքի տակ դնելով նրա աներկհատ գործունեությունը, ինչպես նաև մարդու գոյությունը:

Երկրի կենսոլորտի կայունության գիտական բացատրությունը տվել է ակադեմիկոս Վերնադսկին, որը միաժամանակ կենսոլորտի մասին գիտության և «կենսագեոքիմիա» նոր առարկայի հիմնադիրն է:

Նա առաջին անգամ ուշադրություն դարձրեց կենսոլորտում տեղի ունեցող բոլոր կենսաբանական պրոցեսների կենսագեոքիմիական էության վրա: Նրա տեսության համաձայն կենսոլորտի զարգացումը և գործունեությունը կապված է նյութերի մեծ և փոքր շրջանառության հետ: Դա էլ հենց գիտական լեզվով կոչվում է կենսագեոքիմիական ցիկլ:

Նյութերի մեծ շրջանառությունը փակ սիստեմ չէ: Դա փոխադարձաբար կապված բազմաթիվ պրոցեսների արդյունքն է: Դրանցից ամենակարևորներն են. էներգիայի անընդհատ հոսքը, նոր միացությունների առաջացումը, սինթեզված միացությունների տեղափոխությունը, դրանց նպատակասլաց, ռիթմիկ և հետևողական վերափոխությունը, դասավորումը և քայքայումը և այլն:

Ստորև ներկայացվող սխեման պարզ գաղափար է տալիս, թե ինչպես են միմյանց հետ կապված բույսերն ու կենդանիները, մանրէները: Կենդանիների մի մասը սնվում են բույսերով, այսինքն յուրացնում են ֆոտոսինթեզի անմիջական պրոդուկտը (եղջերուներ, նապաստակ, սկյուռ, որոշ միջատներ), որոշ մասն էլ (գիշատիչներ) սնվում են խոտակեր կենդանիներով (աղվես, գայլ, կզաքիս, բու), մի շարք կենդանիներ էլ սնվում են և՛ խոտաբույսերով, և՛ կենդանիներով (արջ, վարազ, մկնակերպեր, զանազան թռչուններ): Գիշատիչ կենդանիները սատկելով, միկրոօրգանիզմների կողմից քայքայվում են և անցնում հողի մեջ: Նույն բախտին են արժանանում նաև մնացած կենդանիները և բույսերը, որոնք գիշատչին կամ խոտակերին զոհ չեն դարձել, մահացել են բնական ճանապարհով:

Բակտերիաները, որոնք ազոտ են ֆիքսում, օրգանական նյութերի ազոտը վերածում են նիտրատների: Մյուս հողային բակտերիաները և սնկերը քայքայում են հումուսը, վերածելով դրանք ածխաթթվի և ջրի, հանքայնացման ենթարկելով դրանք և ազատելով անօրգանական նյութերը, որպես հանքային աղեր բույսերին վերադարձնելով կալիումը, մագնիումը, ֆոսֆորը: Մեկ օրվա ընթացքում միկրոօրգանիզմները ի վիճակի են քայքայել 100—1000 անգամ ավելի շատ նյութեր, քան նրանց սեփական կենսազանգվածն է: Հողային կենդանիները մանրացնում են օրգանական նյութը: Անձրևաորդերը այդ մանրացված օրգանական նյութերը և հողը իրենց կղկղանքներում (որի զանգվածը կազմում է մեկ հեկտարին 5 տոննա) խառնում են իրար: Այդ բազմազան նյութերը ենթարկվում են բակտերիաների ազդեցությանը, վերածվում փափուկ բուսահողի: Մի շարք հողային սնկեր էլ օրգանական նյութը վերածում են կոշտ բուսահողի:

Բնության մեջ նյութերի մեծ շրջանառությունը պայմանավորված է կենսաբանական, գեոքիմիական և գեոֆիզիկական ֆակտորների համատեղ գործունեությամբ:

Սակայն մարդու տնտեսական գործունեությունը իր մասշտաբներով հասել է ոչ միայն կենսագեոքիմիական ներգործության մակարդակի, այլ նույնիսկ որոշ օղակներում համաշխարհային մասշտաբով ձեռք է բերել գլխավոր նշանակություն: Այդ է պատճառը, որ ներկայումս հաճախակի ենք լսում մարդու գործունեության հետևանքով կենսագեոքիմիական ցիկլերի խախտման մասին:

(Շարունակելի)

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

Լույս է տեսնում 1928 թվականից



ՊԻՈՆԵՐ 6. 1978 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ

ՀՍՍՀ նոր սահմանադրությունը
ՀՍՍՀ-ի հիմնը . . . –
Լ. ՀՈՒՐՈՒՆՑ — Կանաչ ծառուղի . . . 3
Վ. ԿԱՐԵՆՑ — Ամառ . . . 6
Ս. ՏԻԳՐԱՆՅԱՆ — Ե՞րբ է գալու մեծ պապիկը. Հայրիկի նկարի հետ . . . 6
Գ. ԱՂԱՍՅԱՆ — Հարգանք և՛ ընկածներին, և՛ ողջերին . . . 8
Հ. ՄԱԹԵՎՈՍՅԱՆ — Պատիժը . . . 9
Ո՞վ էր Ռոբինզոն Կրուզոն. Ո՞ւր էին լողում Կոլումբոսի նավերը . . . 15
Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆ — Հույսի դուռ, լույսի դուռ բացվեց . . . 16
Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ — Թևավոր այգեպաններ . . . 16
Պ. ԽԱՉԱՏՐՅԱՆ — Հայրս դաշտից տուն եկավ . . . 16
Մ. ՂՈՒԿԱՍՅԱՆ — Ֆիլատելիա. լճերի երկիր . . . 18
Ի. ՍԿԱՐՆԻԿ — Նվեր. Խաղ . . . 19
Լ. ՀԱԽՎԵՐԴՅԱՆ — Զրույցներ լեզվի մասին . . . 20
Նվիրված կոմերիտմիության 60-ամյակին . . . 21
Լ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ — Բնության տարրերի փոխադարձ կապն ու պայմանավորվածությունը . . . 22
Շերամիկի արկածներից . . . 24

Շապիկի առաջին էջում
տեսարան մանկական պատկերասրահից

Լուսանկարը՝ ԱՎԵՏ ԵՍԱՅԱՆԻ



«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—82—72, 58—08—86, 56—14—96:

ՎՖ 04634: Պատվեր 832: Տպաքանակ 55700: Չափ. 3 մամ.:
Ստորագրված է տպագրության 24/V 1978 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան տպագրական կոմբինատ, Երևան—9, Տերյան փ., 91:







ՋՈՒԼԻԵՏԱ ՀԱԿՈԲՅԱՆ, Երևան, 14 տ.



ԱԼԲԵՐՏ ԳՐԻԳՈՐՅԱՆ, ԼՂԻՄ, Շուշի, 11 տ.





ԴՈԼՈՐԵՍ ԱԲՐԱՀԱՄՅԱՆ, ք. Արարատ, 14 տ.



ՀԱՍՄԻԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ, Արտաշատի շրջ., գ. Քաղցրաշեն, 14 տ.

ԹԵՐԵԶԱ ՇԱՀՆԱԶԱՐՅԱՆ, Երևան, 7 տ.

# ՇԵՐԱՆԻԿԻ ԱՐԿԱԾՆԵՐԻՑ

Նկ. ՆԻԿՈԼԱՅ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ




